ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 10 1971

ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ

# ԴԱՐՁՅԱԼ ՍԵԲԵՈՍԻ ՄԱՍԻՆ*

## 1

## ՆՈՐ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

*«Սեբեոսի պատմության» վերաբերյալ մեր մենագրությանը[1] նվիրված գրախոսականով հանդես է եկել բանասեր Հ. Պողոս Անանյանը[2], որը ժամանակակից հայագիտությանը ծանոթ է հայ մատենագրության զանազան հուշարձանների վերաբերյալ իր արժեքավոր հետազոտություններով։ Հարգարժան գիտնականը դրական գնահատական է տվել մեր աշխատության գրեթե բոլոր գլխավոր արդյունքներին։*

*Բացառություն է կազմում առաջին գլխում հայտնված մեր այն կարծիքը, թե Սեբեոսի անունով հրատարակված երկի հեղինակը Սեբեոսը չէ։*

*Սեբեոսի հեղինակային խնդիրներին հարգելի մասնագետը խոստանում է անդրադառնալ առանձին հոդվածով. «Մեր տարբեր տեսակետները հաշտարար ոգիով հայտնենք առանձին հոդվածով,* ոչ թէ քննադատելու նպատակով, որքան՝ նոր լուսաբանութիւններու առիթ ընծայելու համար»[3]։ *Մեր ընդգծած բառերի* բարեկամական *ոգով էլ գրված է Հ. Պ. Անանյանի այն հմտալի հետազոտությունը, որի խորագիրն է՝ «Ո՞վ է Սեբեոսի Պատմության հեղինակը»[4]։*

*Ելակետ ընդունելով ոչ թե քննադատելու, այլ՝ միայն նոր լուսաբանությունների առիթ ընծայելու միևնույն սկզբունքը՝ մենք կցանկանայինք ներկայացնել մի քանի փաստեր, որոնք մեր կարծիքով պետք է նպաստեն հարցի ավելի ճշգրիտ քննության գործին։*

---

* Գ. Աբգարյանի «Սեբեոսի Պատմությունը և Անանունի առեղծվածը» (Երևան, 1965) արժեքավոր մենագրությունը, հատկապես Սեբեոսի անունով հայտնի Պատմությունը Խոսրով պատմիչին վերագրելու նրա թեզը՝ քննարկման նյութ դարձավ գիտական մամուլում։ Հրապարակվող հոդվածում Գ. Վ. Աբգարյանն անդրադառնում է այդ քննարկմանը և նոր լուսաբանությամբ ճշգրտում իր տեսակետները քննարկվող հարցերի առթիվ։ Սեբեոսի Պատմությունը հայ հին մատենագրության այն երկերի թվին է պատկանում, որոնք լի են պատմա-բանասիրական բազմաթիվ կնճիռներով, «Մատենադարանի բանբերը» իր էջերը սիրով կտրամադրի բոլոր այն բանասերներին, որոնք նոր փաստերով և մեկնություններով կփորձեն լուսաբանել Սեբեոսի Պատմության հետ առնչվող զանազան հարցեր (Խ մ բ.)։

1 Աբգարյան Գ., «Սեբեոսի Պատմությունը» և Անանունի առեղծվածը, Երևան, 1965։ Այսուհետև՝ Աբգարյան։

2 «Բազմավեպ», 1969, թիվ 8—10, էջ 262—267։

3 «Բազմավեպ», 1969, էջ 267։

4 Հ. Անանյան Պողոս, Ո՞վ է Սեբեոսի Պատմության հեղինակը, «Բազմավեպ», 1970, № 1—3, էջ 5—22։ Այսուհետև՝ Անանյան։

Դեռևս 1958 թ. լույս տեսած մեր «Դիտողությունների» մեջ մենք նկատել ենք Բաղիշեցու ցուցակի վերծանման երկու կարելիություն[5]: Առաջին՝ Խոսրովը «Սեբեոսի Պատմության» հեղինակն է, երկրորդ՝ Խոսրովը այդ Պատմության գլխավոր գերակատարն է (Խոսրով Ապրվեզը): Առաջին կարելիությունը մեզ ավելի հավանական է թվացել և մենք ընդունել ենք դա: Իսկ երկրորդը ժխտել ենք, գրելով. «Ինչ վերաբերում է Խոսրով Ապրվեզին՝ նրա գործերի նկարագրությունը կազմում է Պատմության միայն մեկ հատվածը»[6]:

Փաստերի ավելի ուշադիր քննությունը, սակայն, թելադրում է վերանայել նախորդ կարծիքը և հաստատել Հ. Գ. Անանյանի հետևյալ միտքը. «Երկրորդ կարելիությունը մեզ ավելի հավանական կը թվի, որովհետև ձեռագրին մեջ այժմ վերահիշյալ Պատմությունը անխորագիր է և առանց հեղինակի անվան, բնական է մտածել, որ Վարդանի ժամանակն ալ այդ Պատմությունը անխորագիր և առանց հեղինակի անուն էր: Վարդան Բաղիշեցին՝ գրքի պարունակությունը նկատի ունենալով, անոր վերնագիր մը տված կրնա ըլլալ և քանի որ Պատմության կարևոր գերակատարներեն է Խոսրով Պարսից արքան, զայն կոչած Պատմութիւն Խոսրովու»[7]:

Հայտնի է, սակայն, որ Սեբեոսի նկատմամբ մեր կասկածը հիմնված է եղել ոչ թե Վարդան Բաղիշեցու տեղեկության, այլ՝ «Հերակլի Պատմություն» խորագրի և ներկա «Սեբեոսի» բովանդակության միջև եղած անհամապատասխանության վրա: Ուստի Բաղիշեցու ցանկի Խոսրովից՝ որպես քննարկվող երկի հեղինակից հրաժարվելուց հետո էլ կասկածը Սեբեոսի նկատմամբ շարունակում է մնալ[8]:

Հ. Գ. Անանյանը իրավացիորեն համոզված լինելով, որ Բաղիշեցու ցանկի Խոսրովը պարսից արքա Ապրվեզն է, կասկածի տակ է դրել Խոսրով անվան գոյությունը Կիրակոս Գանձակեցու ցուցակում: Նա որպես ապացույց վկայակոչել է այն փաստը, որ Կիրակոս Գանձակեցու «քանի մը ձեռագրեր չունին Խոսրովի անունը պարունակող ամբողջ տողը... Ուստի, տարակուսելի կմնա Խոսրով անունին հարազատությունը, գոնե Կիրակոս Գանձակեցիի քով»[9]:

Ծանոթ են Գանձակեցու 50 ձեռագրեր, որոնց հիման վրա հանգուցյալ ակադեմիկոս Կ. Մելիք-Օհանջանյանը կազմել է Գանձակեցու բնական բնագի-

5 Հ. Գ. Անանյանը գրում է. «Աբգարյան առաջին կարելիությունը միայն նկատած է» (Անանյան, էջ 20):

6 Աբգարյան Գ., Դիտողություններ Սեբեոսի Պատմության մասին, «Բանբեր Մատենադարանի», № 4, Երևան, 1958, էջ 69:

7 Անանյան, էջ 20:

8 Շահխաթունյանն ինքը կասկածել է Սեբեոսի վրա և 1833 թ. կազմած իր ցուցակում ներկա «Սեբեոսը» գրանցել է այսպես. «Պատմութիւն (կարծի) Սեբէոսի» (Մաշտոցի անվ. Մատենադարան, ձ. 3801, էջ 142բ): Ավելի վաղ՝ 1828 թ. այդ երկը ուրիշների կողմից գրանցված է եղել՝ «Պատմութիւն մի անհեղինակ» (ձ. 3801, էջ 209բ): Հետագայում՝ 1842 թ. լույս տեսած իր գրքում («Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի...») Շահխաթունյանը կասկած չի հայտնել. բայց ավելի ուշ ժամանակներում հրապարակված նրա ցուցակի ֆրանսերեն թարգմանության մեջ Սեբեոսի անվան դիմաց դրված է հարցական նշան, որը միաժամանակ վկայում է նաև ականավոր հայագետ Մ. Բրոսսեի կասկածի մասին, որովհետև նա է թարգմանել Շահխաթունյանի ցուցակը (Brosset M., Rapports sur un Voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, St. Peterbourg, 1849, էջ 45 և 49):

9 Անանյան, էջ 21:

րը։ Սրանցից միայն չորսում, այն էլ՝ 17—18-րդ դարերում ընդօրինակված ձեռագրերում, բացակայում են և՛ Կորյունի, և՛ Խոսրովի անունները։ Սա պատահական երևույթ է, որը բացահայտվում է № 1768 ձեռագրի միջոցով։ Սույն ձեռագիրը և №№1769, 3071 ձեռագրերն ունեցել են միևնույն մայր ձեռագիրը[10]։ Ահա, այս երեք ձեռագրերից երկուսն ունեն Կորյունի և Խոսրովի անունները, իսկ մեկը՝ ոչ։ Պարզ է, որ ձեռագրերից մեկի գրիչը մոռացել է մայր ձեռագրից ընդօրինակել հիշյալ տողը։ Այնպես որ, Գանձակեցու ցուցակի վրա կասկածելու հիմք չկա։

«Հերակլի պատմություն» խորագրի և ներկա «Սեբեոսի» բովանդակության անհամապատասխանությունն այնքան լուրջ փաստ է, որ անտեսել չի կարելի։ Ուստի հարցը գիտականն իրավամբ անդրադարձել է դրան և հաստատել է Հ. Գաթրճյանի կարծիքը. «Ինձ համաձայն ավելի հավանական կը թվի Գաթրճյանի կարծիքը... թե Սեբեոս իր գրքին վերնագիրը Հերակլ կայսեր նվիրած է, որովհետև այդ շրջանի ամենեն կարևոր եղելությունը նկատված էր սուրբ խաչափայտին Երուսաղեմեն գերի տարվիլն և ապա անոր ազատագրությունը Հերակլ կայսեր ձեռքով և քաջությամբ»։

Սակայն Գաթրճյանի բացատրությունը ներկա «Սեբեոսին» չի համապատասխանում, որովհետև այս երկի հեղինակը «իր գրքին վերնագիրը Հերակլ կայսեր նվիրած» չէ։ Սեբեոսին վերագրվող երկի հեղինակն իր գրքի մեջ հետաքրքրող մասը կոչել է ոչ թե «Պատմութիւն ի Հերակլն», այլ՝

Մատեան ժամանակեան,
Պատմութիւն թագաւորական,
Վէպ արիական,
Վանումն տիեզերական,
Հէն Սասանական՝
ՅԱպրուէզն Խոսրովեան...[11]։

«Մատեան» բառի որոշակի գործածությամբ այստեղ հայտնված է, որ քննարկվող երկի տվյալ մասը նվիրված է Սասանյան Խոսրովին և բառացի կոչված է «ժամանակագրական մատյան... Խոսրովի մասին». «Մատեան ժամանակեան... յԱպրուէզն Խոսրովեան»։ «Մատեան ժամանակեան» արտահայտության և «յԱպրուէզն Խոսրովեան» բառերի միջև ընկած բոլոր չորս տողերում հեղինակը բնութագրում է Խոսրովին և նրան նվիրված «թագավորական պատմությունը»։ Ամբողջ հատվածի թարգմանությունն է. «ժամանակական մատյան, թագավորական պատմություն, արիական վեպ՝ համաշխարհային գրոհի, սասանական հենի, Ապրվեզ Խոսրովի մասին»։ Այս խորագրի տակ զետեղված նյութը վերաբերում է մինչև Խոսրովի մահը տեղի ունեցած իրադարձություններին։ Որից երկու գլուխ հետո սկսվում է գրքի երկրորդ բաժինը, նվիրված արաբներին, հետևյալ խորագրով. «Բարձումն Սասանականին... եւ մուտ որդւոցն Իսմայելի յաշխարհս Հայոց»։

Մատյանի ժամանակագրությունը նույնպես հարմարեցված է հատկապես Խոսրով Ապրվեզի թագավորած տարիների հաջորդականությանը։ Սա պարզ

10 Կ. Գանձակեցի, առաջաբան, էջ 100։

11 Սեբէոսի եպս. Պատմութիւն, Երևան, 1939, էջ 32։ Այսուհետև՝ ՍեՊ։

ապացույց է այն բանի, որ քննարկվող երկի հեղինակը ոչ միայն Խոսրովի անվամբ է կոչել իր մատյանը, այլև հենց սկզբից ծրագրել և հյուսել է այդ մատյանի ժամանակագրությունը՝ որպես Խոսրովի (և՝ ոչ Հերակլի) պատմության ժամանակագրություն: Նույնիսկ Հռիփսիմեի տաճարի շինության տարեթիվը նշված է ոչ թե ըստ խաչափայտը փրկող քրիստոնյա կայսր Հերակլի, այլ ըստ պարսից Խոսրով արքայի տարիների. «Եւ եղև յամի ԻԸ-րդի թագաւորութեանն Ապրուէզ Խոսրովու քակեաց կաթողիկոսն Կոմիտաս զմատուռ սրբոյն Հռիփսիմեայ ի Վաղարշապատ քաղաքի»[12]:

«Մատեան... Խոսրովեան» խորագրի տակ զետեղված նախաճառում նույնպես հեղինակը որոշակիորեն հայտնում է, որ ինքն այդ բաժնում նկարագրելու է Խոսրովի գործերը. «Որ հրդեհեալ բոցացոյց զաս ի ներքոյ ամենայն, զդղրդեալ զծով և զցամաք, զարթուցեալ զկործանումն ի վերայ ամենայն երկրի»[13] Սրանից հետո նա հայտնում է, որ ինքը շարադրելու է նաև «հարավային» հարձակումների, այսինքն՝ արաբական առաջին արշավանքների պատմությունը. «եւ զՀարաւայինն զարթուցեալ մեծաւ բորբոքմամբ՝ յարձակեալ ի վերայ միմեանց և կատարել զհրամանն բարկութեան Տեառն ի վերայ ամենայն երկրի»[14]:

Այսպիսով՝ քննարկվող երկը բաժանված է հիմնականում երկու մասի՝ Խոսրովի մատյան և արաբական արշավանքների պատմություն: Մասերից և ոչ մեկը Հերակլի անվամբ չի վերնագրված: Հետևաբար՝ ամբողջ գիրքը չէր կարող կրել Հերակլի անունը:

Եվ ընդհակառակը, շատ հնարավոր է, որ գիրքն ամբողջությամբ կոչված լինի Խոսրովի անվամբ, որովհետև գրքի գլխավոր դերակատարը Խոսրովն է, և, ինչպես ասվեց, պատմական դեպքերի ժամանակագրությունն էլ չափված է ըստ Խոսրովի: Խոսրովի սպանությանը հաջորդող դեպքերի նկարագրությունը գրքի նախորդ մասի բովանդակության համեմատությամբ այնքան քիչ է, որ հեղինակը կարող էր ամբողջ գիրքը կոչել Խոսրովի անվամբ: Եվ այն հանգամանքը, որ նա արաբներին վերաբերող գրեթե չափածո նախերգանքը («և զՀարաւայինն զարթուցեալ մեծաւ բորբոքմամբ») նույնպես զետեղել է «Խոսրովի մատյանին» նվիրված նախերգանքի մեջ՝ ցույց է տալիս, որ նա իր գրքի երկու բաժինների բովանդակությունը կարող էր միավորել մեկ անվան՝ Խոսրովի անունը կրող խորագրի տակ:

«Խոսրովի մատյանի» ընդհանուր նախերգանքն ավարտելուց հետո՝ հեղինակն իր «վեպն» սկսում է հետևյալ արտահայտությամբ. «Եւ արդ՝ ասացից զվէպս ի կործանիչն և յապականողն Խոսրով. յԱստուծոյ անիծեալն»[15]: Այստեղ նույնպես պարզ ասված է, որ առաջիկա մատյանը հանդիսանում է կործանիչ և ապականող Խոսրովի (և ոչ՝ Հերակլի) «վեպը»: Այսպիսով՝ Գաթրճյանը ճիշտ չի ենթադրել, թե քննարկվող երկի հեղինակը «իր գրքին վերնագիրը Հերակլ կայսեր նվիրած է»:

Ն. Ակինյանը հնարավոր է համարել, որ այս երկի վերնագիրը փոխած լինեն ուրիշները՝ «փոխանակ աշխարհավեր օտարազն թագավորի անվան՝

12 ՍեԲ, էջ 89:
13 Նույն տեղում, էջ 32:
14 Նույն տեղում:
15 Նույն տեղում:

*բարեպաշտ Հերակլ կայսեր անունը կարկառուն ընծայելով»*[16]*։ Բայց, ինչպես ստորև կտեսնենք, սույն երկը մեզ հայտնի մատենագիրներից ոչ ոք Հերակլի անվամբ չի կոչել*[17]*։*

*Հ. Գ. Անասյանը «Խոսրովի մատյանի» և միջնադարյան պատմիչների հիշատակած Սեբեոսի «Հերակլի պատմության» նույնացման համար չափանիշ է ընտրել Ասողիկին։ Հարգարժան բանասերի ելակետն այն է, որ Ասողիկը Հերակլի մասին տեղեկությունները քաղել է մեծ մասամբ քննարկվող երկից։ Սրանից էլ եզրակացվում է, թե այս երկը «Հերակլի պատմությունն» է։ Շատ պատանելի սույն եզրակացությունը հիմնված է այն տրամաբանության վրա, թե Ասողիկը Հերակլի վերաբերյալ տեղեկությունները պետք է քաղած լիներ անպայման «Հերակլի պատմություն» կոչված մի երկից։ Սակայն, սա, մեր կարծիքով, միակ և պարտադիր նախապայման չէ. մանավանդ, որ Հերակլի անունը կրող մեզ ծանոթ աղբյուրները (նրանց թվում՝ մասամբ նաև Գեորգ Պիսիդեսի չափածո պատմությունները) որպես պատմական սկզբնաղբյուրներ՝ առաջնային նշանակություն չունեն։ Պատճառը Հերակլի շուրջ հյուսված զանազան զրույցներն են, որոնք առավել գեղարվեստական, քան պատմագրական արժեք ունեն։ Հետևաբար՝ Ասողիկը կարող էր Հերակլի մասին ավելի կարևոր տեղեկություններ հավաքել ո՛չ անպայման «Հերակլի պատմություն» կոչված մի երկից*[18]*։ Նա այդպես է վարվել, օրինակ, Գրիգոր Լուսավորչի մասին նյութեր հավաքելիս։ Թվում է, թե նրա գլխավոր աղբյուրը պետք է լիներ Ագաթանգեղոսի պատմությունը, որը Ասողիկը կոչում է «Գրիգորի պատմություն», բայց իրականում նա իր տեղեկությունները քաղել է հիմնականում Մովսես Խորենացուց։ Այդպես էլ նա՝ Հերակլի մասին տեղեկությունները քաղել է ներկա «Սեբեոսից», չնայած՝ սա «Հերակլի պատմություն» չէ։*

*Ըստ որում՝ պետք է նկատի ունենալ, որ Ասողիկը ներկա «Սեբեոսին» դիմել է առաջին հերթին ոչ թե Հերակլի, այլ Խոսրովի վերաբերյալ տեղեկություններ հավաքելու նպատակով։ Խոսրովն Ասողիկի և նրա ժամանակակիցների համար շատ նշանավոր մի արքա էր։ Նրա մասին հորինվել են զանազան պատմություններ։ Մովսես Կաղանկատվացին Խոսրովի սպանությունը նվիրել է հատուկ գլուխ («Սպանումն Խոսրովու»), որի մեջ վիպական մանրամասնություններով նկարագրում է իր հերոսի վախճանը։ Այս հերոսին նա կոչում է «Ահեղ արարողն՝ դաժիծն Արևելից, յորոյ ի գոչելն միայն ազգք հեռաւորք դողային և մօտաւորք յերեսաց նորա իբրև զմոմ հալեալ պակասէին»*[19]*։ Պատահական չէ, որ ներկա «Սեբեոսը» նույնպես ոգեշունչ մի նախերգանք է նվիրել Խոսրովին և իր գիրքը գրեթե ամբողջությամբ կոչել է «Մատեան ժա-*

---

16 Ակինյան Ն., *Մատենագրական հետազոտություններ, հ. Ա, Վիեննա, 1924, էջ 4։*

17 Անշուշտ *բացառված չէ նաև այն հնարավորությունը, որ քննարկվող երկն ինչ որ անհայտ մեկի կողմից երբևէ սխալմամբ ընկալվեր որպես Հերակլի պատմություն, բայց հավանական է, որ մենք մեր տեսակետը պետք է հիմնենք ոչ թե ուրիշների, այլ բուն հեղինակի խոսքի վրա։ Այս հեղինակն իր գրքի մեջ հետաքրքրող մասը նվիրել է Խոսրովին, Վարդան Բաղիշեցին նույնպես գիրքը կոչել է Խոսրովի անվամբ։ Ուրիշ ոչ մի որոշակի տվյալ մեզ հայտնի չէ։ Որեմն՝ բնական է, որ մենք պետք է հենվենք իրական մատենագրական փաստերի վրա։*

18 *Բյուզանդական մատենագրության մեջ Հերակլին վերաբերող ամենագլխավոր աղբյուրը Թեոփանեսի (9-րդ դ.) երկն է, որը նույնպես «Հերակլի պատմություն» չէ։*

19 Մովսես Կաղանկատվացի, *Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 166։*

մանակեան... յԱպրուէզն Խոսրովեան», այն դեպքում, երբ նա Հերակլին չի նվիրել ոչ մի հատուկ գլուխ։

Առհասարակ Հերակլն Ասողիկի համար չի ունեցել այն նշանակությունը, ինչ վերագրվում է նրան։ Խաչափայտի պատմությանը Ասողիկը նվիրել է ընդամենը երկու նախադասություն։ Իսկ Հերակլի վերաբերյալ տեղեկությունները զետեղել է ոչ թե բյուզանդական, այլ՝ պարսից պատմությանը վերաբերող այն գլխում, որի վերնագիրն է «Թագաւորք պարսից» և որտեղ ներկայացված են Խոսրով Ապրվեզի գործերը։ Պարզ ասած՝ Ասողիկը ներկա «Սեբեոսն» ընկալել է այնպես, ինչպես նրա հեղինակն ինքն է ներկայացրել, այսինքն՝ որպես պարսից արքա Խոսրովի մատյան։ Հետևաբար՝ Ասողիկի ցանկում նշված՝ Բյուզանդական կայսր Հերակլի պատմությունը չենք կարող հաստատ նույնացնել «Խոսրովի մատյանի» հետ։

«Խոսրովի մատյանից» Խոսրովի վերաբերյալ անհրաժեշտ տեղեկություններ քաղելիս Ասողիկն անխուսափելիորեն տեղեկություններ է հավաքել նաև Հերակլի մասին, որովհետև Խոսրովի ժամանակի պատմությունն անհնարին է գրել առանց Հերակլի հետ կապված իրադարձություններին անդրադառնալու։

Ասողիկն իր հիշատակած նույնիսկ շատ հայտնի աղբյուրներից երբեմն քաղում է հազիվ նշմարելի տեղեկություններ։ Բնականաբար, նա կարող էր «Հերակլի պատմությունից» նույնպես քաղել հատուկենտ այնպիսի տեղեկություններ, որոնց տեղը որոշելն այժմ անհնարին է՝ սոսկ այն պատճառով, որ այդ Պատմությունը մեզ չի հասել։

«Ուշադիր քննություն մը բավարար է,—գրում է Հ. Գ. Անանյանը,—վստահօրեն որոշելու, թե Տիեզերական Պատմության որ հատվածները կվերաբերին այս կամ այն պատմիչին»[20]։ Հիրավի՛, այսպես վստահորեն որոշել կարելի է բոլոր հայտնի հեղինակներից քաղված հատվածները։ Բայց երբ Սեբեոսին վերագրվող երկի հեղինակի անունը չի նշված Ասողիկի քաղվածքների կողքին՝ այս դեպքում միևնույն միջոցը մեզ նույնչափ օգնել չի կարող՝ նույնիսկ այն պայմանով, որ մենք համոզված ենք, թե Ասողիկի գիրքը «ամենեն մեթոտիկ ու կանոնավոր պատմագրությունն ըլլալով շատ դյուրին է ստուգել իր բաժինները»[21]։ Դյուրին չէ ստուգել, օրինակ, նրա ասածները Շապուհ Բագրատունուց քաղված հատվածների մասին, որովհետև այս Պատմությունը նույնպես մեզ չի հասել։ Մեր գիտելիքների համաձայն՝ Շապուհը գրել է Բագրատունյաց պատմությունը, բայց Ասողիկի գրքում Շապուհի անունից պատմվում է այնպիսի մի դրվագ (Դավիթ Մարգարեի թագի պատմությունը), որի մասին մենք կռահել անգամ չէինք կարող, եթե Ասողիկն ինքը Շապուհ Բագրատունու անունը չհիշատակեր։ Այդպես էլ՝ անհնարին է ստուգել Ասողիկի ասածը «Հերակլի պատմության» վերաբերյալ, որովհետև Ասողիկը «Խոսրովի մատյանից» Հերակլի մասին իր տեղեկությունները հավաքելուց հետո կարող էր իրական «Հերակլի պատմությունից» քաղել այնպիսի մի միջանկյալ նյութ, որը Հերակլին չվերաբերելով՝ այժմ հնարավորություն չի տալիս որոշելու իր պատկանելիությունը։

«Հերակլի պատմության» էությունը պարզելու գործում կարևոր դեր ունի Սամվել Անեցին։ Ինչպես որ Ասողիկն իր գրքի առաջաբանում դիմելով «Տէր

---

20 Անանյան, էջ 7։

21 Անանյան, էջ 8։

Սարգսին» խոստանում է օգտագործել իր հիշատակած պատմիչներին («բերեալ ընծայ մատուցանեմ տառաւծասէր անձինդ»)[22], այդպես էլ Սամվել Անեցին իր «Ժամանակագրության» առաջաբանում դիմում է «սրբազգեաց Գրիգորին» և խոստանում է կարճառոտ ժողովել իր թվարկած մատենագիրներից անհրաժեշտ տեղեկությունները. «ժողովեցից ի սոցանէ կարճ ի կարճոյ զախորժակս ձեր զբանից համդէս, միայն ճշմարտութեան գնալով զհետս»[23]։ Եվ ապա, նա իր աղբյուրների շարքում նշում է միևնույն աղբյուրը, որը նշել է նաև Ասողիկը՝ «Հերակլն ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ»։ Արդ՝ եթե Ասողիկը այս աղբյուրը նշելով նկատի ունեցած լիներ իսկապես ներկա «Սեբեոսին», բնականաբար Սամվել Անեցին նույնպես պետք է միևնույն աղբյուրը ակնարկած լիներ։ Հետևաբար՝ ինչպես, որ Ասողիկի գրքում ենք գտնում Սեբեոսին վերագրվող երկից քաղված հատվածներ, այդպես էլ պետք է գտնեինք Սամվել Անեցու գրքում։ Ստուգումը, սակայն, պարզում է, որ Անեցու գրքում ներկա «Սեբեոսից» քաղված ոչ մի հատված չկա[24]։ Ուստի պետք է ենթադրել, որ և՛ Անեցին, և՛ Ասողիկը Սեբեոսի անունը տալիս նկատի են ունեցել իսկապես «Հերակլի պատմություն» կոչված աղբյուրը։

Եթե Անեցին մեզ հետաքրքրող դեպքերում օգտված լիներ մեծ մասամբ Ասողիկից՝ կարելի կլիներ ենթադրել, թե նա պարզապես Ասողիկի միջնորդությամբ է հիշատակել Սեբեոսի անունը։ Բայց Անեցին Ասողիկից չի քաղել Սեբեոսի անունը կրող ոչ մի տեղեկություն և նույնիսկ չէր կարող իմանալ, թե Ասողիկն ինքը Սեբեոսից ինչ է քաղել։

Սամվել Անեցին Հերակլի վերաբերյալ տեղեկությունները քաղել է Դրասխանակերտցուց, որը նույնպես Սեբեոսի անունը չի հիշատակել։ Որոշ տեղեկություններ էլ (խաչափայտի գերության և պարսից արքա Խոսրով Ապրվեզի սպանության վերաբերյալ)[25] քաղել է այնպիսի մի աղբյուրից, որն այժմ մեզ

---

22 Ասողիկ, էջ 7։

23 Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 3։

24 Մեր մենագրության 20, 121—122, 178—183 էջերում Սամվել Անեցուց վկայակոչված փաստերը ցույց են տալիս, որ այս պատմիչը միևնույն դեպքերի մասին հաղորդում է ներկա «Սեբեոսից» տարբերվող տեղեկություններ։ Տարբերությունների պատճառը մենք համարել ենք Անեցու օգտագործած ձեռագիրը։ Այսպես, օրինակ, կարծել ենք, թե այդ ձեռագրում «Բորբ»-ի փոխարեն գրված է եղել «Բարն» կամ էլ ձեռագրում գտնված է եղել ներկա «Սեբեոսից» բացակայող մի հատված՝ արաբների կողմից Դվինում սպանված 12.000 զոհերի մասին։ Իրականում, սակայն, այս տարբերությունների պատճառն այն է, որ Անեցին օգտվել է ոչ թե ներկա «Սեբեոսից», այլ ուրիշներից։ Նրա հիմնական աղբյուրը Դրասխանակերտցին էր. Համեմատիր, օրինակ, Սմբատ Բագրատունու (Դրասխ. էջ 69—70, Անեցի, 77), Հովհան Բագարանցու (Դր. 72, Ան. 77), Հռիփսիմեի վկայարանի շինության (Դր. 74, Ան. 79), Հերակլի կողմից Խոսրովին թագավորեցնելու և խաչափայտն տանելու (Դր. 76, Ան. 79), Հերակլի և Եզրի հանդիպման (Դր. 77—78, Ան. 79) և այլ իրադարձությունների մասին տեղեկությունները։ Որոշ տեղեկություններ էլ քաղված են Ասողիկից։ Հմմտ. Վարդան Մամիկոնյանի ապստամբությանը վերաբերող տեղեկությունը Ասողիկի 85-րդ էջում («Իշխանքն Հայոց համօրէն ապստամբեալ ի Պարսից՝ ձեռն ետուն ի Յունականն») Ս. Անեցու հետևյալ տեղեկության հետ. «Իշխանք Հայոց ապստամբեալք ի Պարսից ի ձեռն Վարդայ որդւոյ Վասակայ Մամիկոնէի՝ ձեռն ետուն ի Յոնս» (էջ 75)։ Սրանց փոխարեն, Անեցին ոչինչ չի քաղել ներկա «Սեբեոսից» և բազմիցս հակասում է նրան։ Ըստ Անեցու (էջ 73) Ջամասպ հաջորդում է Պերոզին, իսկ ըստ Անանունի (21) Կավատին։

25 Սույն տեղեկություններն ստուգել ենք նաև Անեցու հնագույն ձեռագրի (Մաշտոցի Մատենադարան, ձեռ. № 5619, էջ 75ա) միջոցով։ Ձեռագրի ընդօրինակման թվականը (1176 թ.) մենք

*ծանոթ չէ, բայց և որը հավանաբար եղել է հենց այն «Հերակլի պատմությունը», որը և հիշատակել է Անեցին[26]։ Մեր այս ենթադրությունը հենվում է այն փաստի վրա, որ Անեցու հիշյալ տեղեկություններն արձագանքում են մեր Մատենադարանի № 993 և № 7729 ձեռագրում պահպանված «Ի Պատմութենէ Հերակղի» հատվածներին։ Այսպես օրինակ, տեղեկություններից մեկը՝ խաչափայտի վերաբերյալ տեղեկությունը, որոշակի նշաններով բացահայտում է իր ազգակցությունը № 7729 ձեռագրում «Հերակլի պատմությունից» բխող հատվածի հետ։ Երկու դեպքում էլ հայտնվում են ներկա «Սեբեոսից» տարբերվող տեղեկություններ, որոնցից են պարսից զորավար* Խոռեմի *անունը (որը և՛ Անեցու գրքում, և՛ Հերակլի պատմության» հատվածում դարձել է* Խոռիան) *և խաչափայտը Խոսրովի* գանձատանը *պահելու մասին լուրը, որը չկա ներկա «Սեբեոսում»։*

*Իրական «Հերակլի պատմության» և ներկա «Սեբեոսի» հարաբերությունները պարզելու գործում որոշակի դեր ունի նաև Մխիթար Անեցին, որը նույնպես իր աղբյուրների շարքում հիշատակում է Սեբեոսի անունը և չի օգտվում ներկա «Սեբեոսից»։*

*Մխիթար Անեցու գրքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հեղինակը որոնել է Սմբատ Բագրատունու մասին գրավոր աղբյուրներ, գրեթե բառացի արտագրել է Դրասխանակերտցու գրքում գտնվող այն ամենը, ինչ վերաբերում է Սմբատին[27], բայց չի գտել ներկա «Սեբեոսին» և ստիպված է եղել՝ Սմբատի կրկնամարտի մասին բավականանալ միայն ուշ ժամանակների աղբյուրներով[28]։*

---

*կասկածելի ենք համարել (ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, 1964, № 84), հենվելով ձեռագրի 107ա էջում գտնվող «Տէր Գրիգոր ամս Ի (=20)» արտահայտության վրա։ Սակայն «Ի» թվանշանը ձեռագրում ավելացված է տարբեր գրչությամբ և չի կարող անվերապահ ապացույց հանդիսանալ մեր ենթադրության համար։*

*Ի դեպ, խաչափայտի գերության վերաբերյալ Անեցու հաղորդած որոշ տեղեկություններ ընդհանուր են ոչ միայն ստորև ներկայացվող «Ի Պատմութենէ Հերակղի» հատվածի, այլև Կաղանկատվացու (Թիֆլիս, 1919, էջ 145—146) համար։ Քանի որ Անեցին Կաղանկատվացուն ծանոթ չի եղել՝ նրանց հավանական աղբյուրը մնում է հիշյալ հատվածի աղբյուրը։ Միևնույն աղբյուրի արձագանքները կան նաև Հացունյաց խաչի պատմությունում (համապատասխանաբար Կեղծ Շապուհ Բագրատունու մեջ) և Կիրակոս Գանձակեցու գրքում (Հմմտ. ձեռ. № 7729, էջ 533, «Արարատ», 1888, էջ 399, Գանձակեցի, էջ 52)։*

*26 Անեցու ցուցակում նույնպես, ինչպես Ասողիկի ցուցակում, չեն նշված այն աղբյուրները, որոնց հեղինակների անունները ձեռագրերում չեն պահպանվել։ Այսպես օրինակ, «Կայսերաց պատմության» հեղինակին չիմանալով՝ Անեցին նրա գիրքը կոչում է «այլ պատմութիւն» (էջ 24)։ Ի դեպ՝ Անեցու ցուցակում չի նշված նաև Հովհաննես Սարկավագի անունը, չնայած՝ Անեցին նյութը շարադրելու ընթացքում վկայակոչում է այդ մատենագրին։ Սա նշանակում է, որ Անեցին Սարկավագին պատմիչ չի համարել և նրանից քաղված տեղեկությունները գտել է Սարկավագի այլևայլ գրությունների մեջ։*

*27 Հմմտ. Դրասխանակերտցի, Թիֆլիս, 1912, էջ 69, տող՝ 12. «Սմբատ քաջ Բագրատունի բազում և անհնարին մարտս յարդարէր»—էջ 71, տող, 15—16՝ «բերդդ քակեսցի և եկեղեցիդ ի դմին տեղ շինեսցի» և Մ. Անեցի էջ 33, տ. 20՝ «Սմբատ քաջ Բագրատունի բազում և անհնարին մարտս յարդարէր»—էջ 34, տ. 8—9 «Սմբատ շինէ զեկեղեցին՝ զսուրբ Գրիգորն քարի և կրով», նաև՝ Դրասխ. էջ 73, տ. 10—16՝ «զկնի արհական... վախճանի ի բարւոք ծերութեան ի Տիզբոն քաղաքի... (և այլուր) և Մ. Անեցի էջ 35, տ. 14—23՝ «արին զկնի այսորիկ մեռաւ ի Տիզբոն, բարւոք քաղաքաւարութեամբ...»—«պարսից խոռենայ»։*

*28 Մ. Անեցին կրկնամարտի նկարագրությունը կարող էր քաղել նաև Ասողիկից, բայց Ասողիկի այդ հատվածն այժմ չկա և մենք զուրկ ենք այդ փաստն ստուգելու հնարավորությունից։ Ասողիկի կորած պրակի մասին տես մեր աշխ. էջ 127։*

Ներկա «Սեբեոսի» և Մխ. Անեցու հակասություններից կարևոր են հետևյալները։ Ըստ ներկա «Սեբեոսի»՝ ցուլը Սմբատի արտակարգ ուժից սարսափած փախչում է, և Սմբատն այնպիսի մի զորությամբ է բռնում փախչող ցուլի ոտքից, որ ցլի կճղակը մնում է Սմբատի ձեռքին, իսկ ցուլը «գնայր ի նմանէ փախստական միով ոտամբն բոկ»։ Մխիթար Անեցին այս հետաքրքիր պատկերի մասին չգիտե և նրա փոխարեն ունի սոսկ մի արտահայտություն. «կալեալ զեղջերուաց ցլոյն՝ սատակեաց»։ Ըստ որում՝ Անեցին չի իմացել, որ ցուլը ոչ թե «սատակել է», այլ՝ իր կճղակը թողնելով Սմբատի ձեռքին՝ փախել, գլուխն ազատել է Սմբատից։ Մյուս հակասությունն այն է, որ ներկա «Սեբեոսի» համաձայն՝ Սմբատն սպանում է ցլից հետո իր վրա հարձակված առյուծին. «բուռն հարեալ զխռշափողոցն՝ խեղդէր զառեւծն և սպանանէր»։ Իսկ Անեցին առյուծի սպանության մասին չգիտե. «կալեալ զականջաց առիւծուն, հեծաւ ի վերայ առիւծուն»։ Անեցին չգիտե նաև այն մասին, որ հունաց թագավորը Սմբատ Բագրատունուն ներել է իր կնոջ խնդրանքով։ Անեցին ներկա «Սեբեոսին» հակասում է նաև նրանով, որ Անեցուն հայտնի չէ, որ թագավորը Սմբատին Աֆրիկա է ուղարկել և կարգել է զորքերի տրիբուն ոչ թե կրկեսամարտից անմիջապես հետո և ոչ թե ի նշան մեծարման, այլ՝ որպես պատժի միջոց, աքսորել է Աֆրիկա, այն բանից հետո, երբ Բագրատունուն չարախոսել են նախանձավորները։

Սմբատ Բագրատունու զրույցի մեկ ուրիշ պատում այնքան է հեռացել բնագրից, որ հունաց թագավորի փոխարեն գործող անձ է դարձել պարսից Շապուհ-Խոսրով արքային։ Բայց որ այդ պատումը, ինչպես նաև Անեցու պատումը պատկանում են զրույցի այն միևնույն ճյուղին, որը 7-րդ դարում գրանցել է նաև ներկա «Սեբեոսը»՝ դա պարզ երևում է բոլոր երեք պատումների նախնական բնագրից մնացած հետևյալ հետքերից.

| «Սեբեոս»[29] | Մ. Անեցի[30] | Անծանոթ հեղինակ[31] |
|---|---|---|
| Եւ էր սա...<br>գեղեցիկ տեսլեամբ<br>և բարձր և լայն<br>հասակաւ...<br>անցեալ սա ի ներքոյ անտառախիտ<br>մայրեաց... և յարձակեալ զաստով<br>ծառոյն՝ բուռն հարկանէր, և կծկեալ...<br>ոտիւք զմէջ երիվարին՝ վերացուցանէր... | Իսկ էր նա<br>հասակաւ բարձր<br>և լայն և գեղեցիկ<br>տեսլեամբ... անցանէր ընդ անտառս,<br>բուռն հարկանէր<br>զձաղկից անտառին<br>և կծկեալ ոտիւքն՝<br>վերացուցանէր զերիվարն։ | Էր հասակաւն<br>բարձր և լայն<br>և տեսլեամբ գեղեցիկ և յանցանելն<br>ընդ անտառսն՝<br>բռնէր Բ ձեռօքն<br>զճիւղս անտառին և կցեալ<br>զոտսն՝ վերացուցանէր զձին... |

Համեմատվող հատվածները Սմբատի նախնական զրույցի միակ հետքերն են, որ անփոփոխ պահպանվել են բոլոր երեք աղբյուրներում, իսկ արջի, ցուլի

29 ՍեՊ, էջ 56։

30 Մխիթար Անեցի, էջ 35։

31 Սամվել Անեցի, էջ 76։ Սամվել Անեցու հնագույն ձեռագրերում այս զրույցը չկա, որից երևում է, որ դա հետագայում է ներմուծվել այս պատմիչի գրքի մեջ (Միևնույն գրքում չէր էլ կարող երկու անգամ հանդիպել միևնույն զրույցը)։

է առյուծի հետ մենամարտի մանրամասնությունները նկարագրելիս Մխիթար Անեցին և Անծանոթ հեղինակը գրեթե բառացի կրկնում են միմյանց և երկուսն էլ հավասարաչափ հեռանում են ներկա «Սեբեոսից»։ Ըստ որում՝ պարզ նկատվում է, որ Անեցին և Անծանոթ հեղինակն օգտվել են անհամեմատ ավելի ուշ ժամանակներից եկող զրույցներից։ Այն դեպքում, երբ ներկա «Սեբեոսը» կանգնած է հենց զրույցի ակունքների մոտ։

Այսպիսով՝ Մխիթար Անեցին Սմբատի մասին իր տեղեկությունները քաղել է մեզ անհայտ աղբյուրներից։ Սմբատին նվիրված գլխում Անեցին մի քանի այլ տեղեկություններ հաղորդելիս նույնպես ներկա «Սեբեոսը» ձեռքին չունենալով, օգտվել է ուրիշ աղբյուրներից, մասնավորապես Ասողիկից։

Քանի որ Ասողիկն ինքն է քննվող հատվածն արտագրել ներկա «Սեբեոսից», իսկ Մխիթար Անեցին էլ հարազատությամբ արտագրել է Ասողիկին, այժմ դժվար է միանգամից որոշել աղբյուրների անմիջական ազգակցությունը։ Ուստի ներկայացնենք միայն նրանց տարբերող բառերն ու արտահայտությունները։

| «Սեբեոս»[32] | Ասողիկ[33] | Մ. Անեցի[34] |
|---|---|---|
| 1<br>Թետալացւոց | 1<br>Թետալաց | 1<br>Թետաղաց |
| 2<br>զօրուն շնորհէ | 2<br>զօրացն բաշխեաց | 2<br>զաւրացնի իւր բաշխէր |
| 3<br>տարէ առ արքայն Պարսից սուղ ինչ | 3<br>սուղ ինչ... առա<br>քեալ Թագաւո-<br>րին Որմզդի | 3<br>առեալ ինչ Որմզդի<br>առաքէր |
| 4<br>Զգանձն զամենայն<br>ի մէջի արարեալն | 4<br>ժողովել<br>զգանձս ի<br>զօրացն | 4<br>ժողովել ի զօրացն<br>զաւարն |
| 5<br>Ընդոստացեալ զօրն<br>ամենայն՝ սպանին<br>զհաւատարիմս արքա<br>յին | 5<br>Ընդ որ զայրացեալ<br>զօրացն սպանին<br>զփուշտիպանսն | 5<br>Ընդ որ զայրացեալ<br>Որմզդի<br>առաքէ փուշտիպան |
| 6<br>զՎահրամ նստուցին<br>թագաւոր իւրեանց | 6<br>թագաւորեցուցին<br>զՎահրամ | 6<br>թագաւորեցուցին<br>զՎահրամ |
| 7<br>եհաս լուր աղաղակին<br>...առ Որմզդի | 7<br>զօր կալեալ<br>Որմզդի | 7<br>զօր կալեալ<br>Որմզդի |

[32] ՍեՊ. էջ 33, տ. 27՝ «Վահրամ ոմն Մեհրեւանդակ»—էջ 36, տ. 2. «նստուցին զորդի նորա թագաւոր»։

[33] Ասողիկ, էջ 112, տ. 17—էջ 113, տ. 15։

[34] Մ. Անեցի, էջ 34, տ. 10—20։

| | | |
|---|---|---|
| 8 | 8 | 8 |
| (չիք) | փախչել կամելով | փախստական լինի |
| 9 | 9 | 9 |
| նստուցին | նստուցին | զորդի նորին |
| զորդի նորա | թագաւոր | զԽոսրով |
| թագաւոր | զԽոսրով | թագաւորեցուցին[35] |
| | որդի նորին | |

Ինչպես տեսնում ենք, Մխիթար Անեցին օգտվել է ոչ թե ներկա «Սեբեոսից», այլ՝ Ասողիկից։

Սեբեոսի անունը հիշատակող միջնադարյան պատմիչներից է նաև Կիրակոս Գանձակեցին։ Եթե նա օգտված լիներ ներկա «Սեբեոսից» կարող էինք ենթադրել, թե նա իր ցուցակում Սեբեոսի անունը տալով նկատի է ունեցել այս Պատմությունը։ Բայց քանի որ Գանձակեցին ներկա «Սեբեոսից» օգտված լինելու նշաններ ցույց չի տալիս[36], մնում է մտածել, որ նա կամ ուրիշ գիրք է նկատի ունեցել կամ էլ Սեբեոսի անունը հիշատակել է որպես իրեն հայտնի պատմիչի անուն, առանց անձամբ այդ պատմիչից օգտվելու։ Հայտնի է, որ Գանձակեցին, ի տարբերություն Ասողիկի և Սամվել Անեցու, պատմիչների ցանկը կազմելիս չի հայտնել, թե անպայման օգտվել է իր հիշատակած պատմիչներից։

Քանի որ ներկա «Սեբեոսը» հեղինակի անունը կորցրած լինելով՝ հայտնի է դարձել գլխավոր դերակատարի՝ Խոսրովի անվամբ՝ մենք հնարավոր ենք համարում, որ ինչպես Բագիշեցու, այնպես էլ Գանձակեցու ցուցակներում նշված Խոսրով անունը նույնանում է այդ Խոսրովի անվան հետ[37]։ Գանձակեցու

35 Այս բառերին անմիջապես հաջորդող «որոյ անկեալ առ Մաւրիկ», բառերը և նրանց հաջորդող ամբողջ հատվածը Խոսրովի մասին՝ նույնպես քաղված են Ասողիկից։ Եթե Անեցին մինչև այստեղ բառ առ բառ արտագրում էր Ասողիկին՝ բնականաբար կիսատ մնացած միտքը նույնպես պետք է վերջացներ դարձյալ Ասողիկին արտագրելով։ Բայց Ասողիկի գրքից էջեր են կորսվել, այդ իսկ պատճառով էլ Մխիթար Անեցու արտագրած մասն այժմ Ասողիկի գրքում չկա։ Անեցու հատվածի միջոցով կարելի է վերականգնել Ասողիկի կորած մասը։

36 Կ. Գանձակեցին հիմնականում Ս. Անեցուց է քաղել այն տեղեկությունները, որոնք պետք է քաղեր ներկա «Սեբեոսից»։ Դրանցից են Գանձակեցու 50—54 էջերում հանդիպող տեղեկությունները Մորիկի սպանության, Սմբատ Բագրատունու վարած մարտերի, Աբրահամ կաթողիկոսի, Հռիփսիմէի տաճարի շինության, Կավատի և նրա հաջորդների, Հերակլի՝ Կարինում գումարած եկեղեցական ժողովի մասին։ Խոռեամ զորավարի կողմից Երուսաղեմի գրավման և խաչափայտի գերության պատմությունը (էջ 52) Գանձակեցին քաղել է Հացունյաց խաչի պատմությունից կամ «Հերակլի պատմությունից»։

37 Հ. Անասյանի «Հայկական մատենագիտության» Ա. հատորում զետեղված ԺԱ և ԺԲ ցանկերում (էջ 52—53) Սեբեոսի փոխարեն գրանցված է Հերակլի անունը։ Այնպես էլ՝ կարող էր Խոսրովի անունը գրանցված լինել «Խոսրովի պատմության» հեղինակի փոխարեն։ Հ. Գ. Անանյանը (էջ 21) նույնպես Գանձակեցու ցուցակի Խոսրովին նույնացրել է Խոսրով Անձևացի հետ։ Բայց հարգելի գիտնականը Գանձակեցու նշումը համարում է հետագա ընդմիջարկություն, որը սակայն, ինչպես տեսանք, այդպես չէ։ Խոսրովի անունը մատենագիտական ցանկերի մեծամասնության մեջ նշված է լինում Ղևոնդից առաջ։ Եվ իսկապես, «Խոսրովի պատմությունը» բովանդակությամբ անմիջապես նախորդում է Ղևոնդի պատմությանը։ Հետևաբար կարելի է ենթադրել, որ Խոսրովի անունը Կիրակոս Գանձակեցու ցանկում բխում է իսկապես «Խոսրովի պատմության» խորագրից և այդ ցանկից թափանցել է նաև հետագա պատմիչների ցանկերի մեջ։

ցուցակում այդ անունը նշված պետք է լինի դարձյալ վերացականորեն, որովհետև, ինչպես ասվեց, Գանձակեցին ներկա «Սեբեոսից» չի օգտվել:

Կիրակոս Գանձակեցին զանազանում է երկու Խոսրովների՝ Մաշտոցի աշակերտ Խոսրովին և Սեբեոսի ու Ղևոնդի կողքին հիշատակված Խոսրովին[38]: Առաջինին նա պատմիչ չի համարում, իսկ երկրորդին նշել է պատմիչների շարքում: Առաջինին հիշատակել է Մաշտոցի աշակերտների ցուցակում. «Մուշե, Արձան, Խոսրով, Ղազար»[39] և այլն: Այս թվարկումից հետո Գանձակեցին երկրորդ անգամ Մաշտոցի աշակերտներին անդրադառնալիս հիշատակել է նրանցից միայն այնպիսիներին, որոնք «ի վերայ թարգմանութեան և գիրս յինքեանց շարադրեցին, որպէս սրանչելին Մովսէս... և Կորիւն... և Եղիշէ... և Ղազար... և Եզնակ... և Դաւիթ փիլիսոփայ... և Մամբրէ վերծանող... և յետոյ մեծն Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոս»[40]: Այստեղ Խոսրովի անունը չի նշված, և սա նշանակում է, որ Գանձակեցին 5-րդ դարում Խոսրով պատմիչ չի ճանաչել: Ուրեմն Գանձակեցու Խոսրովի համար մնում են 6—7-րդ դարերը: 6-րդ դարում որևէ պատմիչ մեզ հայտնի չէ: Դրա լավագույն վկան հենց ներկա «Սեբեոսն» է: Նա իր Պատմությունը շարունակում է անմիջապես 5-րդ դարի պատմիչներից հետո և 6-րդ դարի պատմությունը շարադրում է որպես ուրիշների կողմից չգրված պատմություն: Նշանակի՝ 6-րդ դարում նրան որևէ պատմիչ հայտնի չի եղել: Այսպիսով՝ Կիրակոս Գանձակեցու ցուցակում հիշատակված Խոսրովի ամենահավանական ժամանակը 7-րդ դարն է, այսինքն՝ այն դարը, երբ գրվել է ներկա «Սեբեոսը»:

Արդ՝ քանի որ Գանձակեցին իր ցուցակում առանձին-առանձին նշել է և՛ Խոսրովին, և՛ Սեբեոսին, կարելի է ենթադրել, որ նա Խոսրովի անվամբ հիշատակել է «Խոսրովի մատյանը», իսկ Սեբեոսի անվամբ՝ իրական Սեբեոսին:

Մխիթար Այրիվանեցին նույնպես միջնադարյան այն պատմիչներից է, որը հիշատակում է Սեբեոսի «Հերակլի պատմությունը» և չի օգտվում ներկա «Սեբեոսից»: Նա նույնպես իր տեղեկությունները քաղել է ուրիշներից (Ս. Անեցի կամ Դրասխանակերտցի): Այդ տեղեկություններից են. «Սմբատ Բագրատունի գնայ ի Վրկանը, որ է Սագաստան և գտանէ հայք, մոռացեալ զլեզու և կարգէ

---

[38] Գանձակեցու ներկա բնագիրն (էջ 7) ունի հետևյալ տեսքը. «Եւ Հերակլն ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ: Եւ պատմութիւն սքանչելի առն Կորեան: Եւ Խոսրով, Եւ Ղեւոնդ երիցու Պատմութիւնն» (Գանձակեցի, էջ 7): Ինչպես տեսնում ենք, Սեբեոսը նշված է Կորյունից առաջ: Գանձակեցին ինքը նման անտեղյակություն չէր կարող թույլ տալ, որովհետև նա քաջ ծանոթ է և՛ Սեբեոսի, և՛ Կորյունի ապրած ժամանակներին: Այսպես. նա իր գրքի 28-րդ էջում Կորյունին թվարկում է Սահակի և Մաշտոցի աշակերտների շարքում: Ըստ որում՝ նա Կորյունին ճանաչում է ոչ թե սոսկ որպես Մաշտոցի վարքագրի, այլ՝ ընդհանուր պատմության հեղինակի. «Կորիւն՝ զՊատմութիւն սրբոյն Մեսրոպայ և այլ ժամանակացն»: Ուրեմն նա չէր կարող ցանկը կազմելիս Մաշտոցի աշակերտ Կորյունի անունը դնել 7-րդ դարում ապրած Հերակլի պատմության հեղինակի անունից հետո, այն էլ՝ այն դեպքում, երբ նա ճշգրիտ հերթականությամբ է նշել իր թվարկած մյուս բոլոր պատմիչներին: Նրան լավ հայտնի է եղել նաև Սեբեոսի երկի հերոսի՝ Հերակլի ապրած ժամանակը, որին անդրադարձել է իր գրքի 52—56-րդ էջերում: Այսպիսով՝ հենց Գանձակեցու ցուցումների հիման վրա՝ մեզ հասած ձեռագրերում աղճատված ցուցակը պետք է սրբագրել այսպես. «Եւ Պատմութիւն սքանչելի առն Կորեան: Եւ Խոսրով: Եւ Հերակլն ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ: Եւ Ղեւոնդ Երիցու Պատմութիւնն», կամ էլ՝ «Եւ Պատմութիւն սքանչելի առն Կորեան: Եւ Հերակլն ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ: Եւ Խոսրով: Եւ Ղեւոնդ երիցու Պատմութիւնն»:

[39] Կիրակոս Գանձակեցի, հրատ. Կ. Մելիք-Օհանջանյանի, էջ 28:

[40] Նույն տեղում:

եպիսկոպոս նոցա զՀաբէլ»[41], «Տէր Կոմիտաս մեծացոյց զվկայարան[42] սրբոյն Հռիփսիմեայ», «Դուին էառ տաճիկն և 1200 կոտորեաց ի սուրբ Սարգսին»[43]

Իրական «Հերակլի պատմությունից» օգտվել է նաև Ուխտանեսը, որն այս Պատմության խորագիրը նշել է առանց Սեբեոսի անունը տալու։ Նրա հաղորդած տեղեկությունը նույնպես չի համապատասխանում ներկա «Սեբեոսի» բովանդակությանը։ Այսպես. նա 2-րդ հատորի 56-րդ էջում Սմբատ Բագրատունու մասին գրում է. «Բազում պատերազմունս վանեալ և վառնեալ ի Հայս, ի Յոյնս և ի Պարսիկս՝ որպէս ուսուցանէ քեզ Պատմութիւնն Հերակղի»։ Ներկա «Սեբեոսի» մեջ Սմբատ Բագրատունու՝ Հայաստանում և Հունաստանում վարած պատերազմների մասին խոսք չկա[44]։ Պետք է ենթադրել, որ Ուխտանեսն օգտագործել է ուրիշ աղբյուր։ Իսկ այդ աղբյուրը կարող էր լինել իսկական «Հերակլի պատմությունը», որովհետև Ուխտանեսը հենց այդպես էլ գրում է. «որպես ուսուցանէ քեզ Պատմութիւնն Հերակղի»։

Հ. Գ. Անանյանը նկատի ունենալով մեր այն կարծիքը, թե Ուխտանեսի օգտագործած «Հերակլի պատմությունը» տեղեկություններ է պարունակել նաև Սմբատ Բագրատունու մասին, գրում է. «Ուրեմն, պետք է ենթադրենք, որ Սեբեոսի իրական Պատմութիւն Հերակլի գիրքն ալ կը պարունակեր Մորիկի և Խոսրով Ապրվէզի շրջանի պատմությունը, երբ կապրեր Սմբատ Բագրատունի, և չէր գոհանար միայն Հերակլ կայսեր շրջանի պատմությամբ։ Ասով՝ նույն առարկությունը Սեբեոսի «իրական Պատմության» համար ալ կը մնա»[45]։

Աղբյուրների օգտագործման ուխտանեսյան եղանակը, սակայն, թույլ է տալիս գտնել երևույթի բացատրման նաև մեկ ուրիշ եղանակ։ Ուխտանեսը, երբ իր այս կամ այն աղբյուրի կապակցությամբ գործածում է «որպէս ուսուցանէ (կամ՝ «ցուցանէ») քեզ Պատմութիւնն (կամ՝ «պատմագիրն»)» արտահայտությունը՝ մեծ մասամբ բառացի արտագրում է իր աղբյուրը։ Ուրեմն նա կարող էր «Հերակլի պատմության» մեջ կարդալ ոչ թե Սմբատ Բագրատունու վարած բազմաթիվ պատերազմների մանրամասն պատմությունը, այլ սոսկ այն մի հատիկ նախադասությունը, որը նա վկայակոչել է ըստ «Հերակլի պատ-

41 Մ. Այրիվանեցի. ՄԺԲ, 1867, էջ 49։ Հաբելի եպիսկոպոսական աստիճանի մասին տեղեկությունը քաղված է Ս. Անեցուց։

42 Անդ., էջ 50. Հռիփսիմեի եկեղեցին «վկայարան» են կոչում Դրասխանակերտցին և Ս. Անեցին, իսկ ներկա «Սեբեոսը» կոչում է «մատուռ ս. Հռիփսիմեայ» (89)։

43 Անդ.։

44 Հարցը բանասերը գտնում է, որ Ուխտանեսը կարող էր ներկա «Սեբեոսի» հիշատակած երկու Սմբատներին (Սմբատ որդի Մանվելի և Սմբատ Վրկան Մարզպան) ընկալել որպես մեկ անձնավորություն և այդ դեպքում «նկատի առած ըլլալով... ոչ միայն ԻԲ–ԻԷ գլուխները, այլ նաև զանոնք կանխող ԺԸ գլուխը, նշմարած ըլլա հոն Սմբատի վանած պատերազմները ի Հայս, և ի Յոյնս» (էջ 17)։ Սակայն, Ուխտանեսը Սմբատի՝ «ի Հայս և ի Յոյնս» վանած պատերազմների մասին որևէ տեղեկություն չէր կարող գտնել նաև հենց ԺԸ գլխում, որովհետև այդ գլխում և առհասարակ քննարկվող երկում նման տեղեկություններ չկան։ Ի դեպ՝ Սմբատը Խաղտիքում որևէ պատերազմ չի մղել և չէր էլ կարող մղել, որովհետև նա այդ քաղաքն էր մտել հենց Մորիկ կայսեր համաձայնությամբ։ Բայց որովհետև Մորիկի կամքին հակառակ, ինքնակամ (բռնի) կանգ առավ այնտեղ և ճանապարհը չշարունակեց, դրա համար էլ քննարկվող երկի հեղինակը ԺԸ գլխում գործածել է «բռնանալ» բառը. «Իսկ Սմբատ հասեալ ի Խաղտիս՝ բռնանայր, քանզի երկեաւ զօրն ի ճանապարհին»։ (Եթե նույնիսկ Խաղտիքում կռիվ եղած լիներ դա չէր նշանակի «բազում պատերազմունս... ի Հայս և ի Յոյնս»)։

45 Անանյան, 8։

մության»։ Նա այդպես է վարվել, օրինակ, Անանիա Շիրակացուն վերագրված ժամանակագրությունից օգտվելիս.

«Շիրակացի»
Եւ մտեալ ի Հռոմ՝
յամենայն գլխաւոր տեղիս
հրամայեաց կանգնել
պաշտութեան նշան
խաչին Քրիստոսի[46].

Ուխտանես
Եւ մտեալ ի Հռոմ՝
հրամայեաց յամենայն տեղիս
նշանաւորս կանգնել զնշան
յաղթութեան խաչին Քրիստոսի՝
որպէս ուսուցանէ պատմագիրն[47]։

Այսպես էլ՝ նա կարող էր «Հերակլի պատմությունից» արտագրել Սմբատ Բագրատունու վերաբերյալ նախադասությունը։ Հիշենք Տրդատ թագավորի մասին Ուխտանեսի ասածը. «...գործեաց պատերազմս ի Յոյնս և Հայս և ի Պարսս, բազում զօրօք Հայաստանեաց իջեալ ի Դաշտն Գարգարացւոց»[48]։ Ըստ այդմ պետք էր կարծել, թե Ուխտանեսն ինչ որ աղբյուրում կարդացել է Տրդատի բազում պատերազմների մանրամասն պատմությունը, այնինչ՝ նա պարզապես կրկնել է Մովսես Խորենացու հետևյալ տեղեկությունները. «Իսկ քաջին Տրդատայ... բազում ճակատս առեալ նախ ի Հայս և ապա ի Պարսս[49]... ամենայն Հայաստանեօք իջեալ ի Դաշտն Գարգարացւոց»[50]։

«Ի Հերակլեայ պատմութեանց» խորագիրը կրող հատվածում (Ձ. № 993) Հերակլի չորս զորավարներից մեկի անունը Սմբատ է։ Վերջինս մասնակցում է խաչափայտի պատմությանը։ Հնարավոր է, որ բուն Հերակլի պատմության մեջ այս Սմբատի մասին զրույցը հորինելիս նրան են վերագրված եղել նաև Հերակլից ութ տարի առաջ թագավորած Մորիկի ժամանակակից Սմբատ Բագրատունու գործերը։ Սա նշանավոր զորավար էր, իսկ նշանավոր մարդկանց շուրջ են հավաքվում հաճախ նաև նրանց չվերաբերող տվյալներ։

Սույն հարցերի ոլորտում մեզ հետաքրքրողը, իհարկե, հիմնականում այն է, որ Ուխտանեսը օգտագործել է «Հերակլի պատմություն» կոչված մի երկ, որի բովանդակությունը դարձյալ չի համապատասխանում ներկա «Սեբեոսի» բովանդակությանը։

Այսպիսով՝ Սեբեոսի անունը կամ սոսկ «Հերակլի պատմություն» խորագիրը միջնադարում հիշատակում են վեց պատմիչներ՝ Ասողիկ, Սամվել Անեցի, Մխիթար Անեցի, Գանձակեցի, Այրիվանեցի, Ուխտանես[51]։ Եթե ներկա

46 Անանիա Շիրակացու մատենագրությունը, պրոֆ. Ա. Աբրահամյան, Երևան, 1944, էջ 386։
47 Ուխտանես, հ. 1, էջ 83։
48 Ուխտանես, հ. 1, էջ 96։
49 Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 225։
50 Նույն տեղում, էջ 230։ Խորենացին նախքան Տրդատի մասին սույն տեղեկությունը հայտնելը 218—219 էջերում պատմում է Տրդատի՝ Հունաստանում գտնված ժամանակվա քաջագործությունների մասին, որի հիման վրա էլ Ուխտանեսը Խորենացուց օգտվելիս ավելացրել է «ի Յոյնս» արտահայտությունը։
51 Հիշյալ պատմիչներից բացի Սեբեոսի անունը հիշատակված է նաև հետևյալ աղբյուրներում։ Մ. Մաշտոցի Մատենադարանի № 948 ձեռագրի (1196 թ.) 66բ—72ա և 103բ—110ա էջերում պահպանվել են Սեբեոսի անունը կրող երկու ճառեր՝ 1. «Սեբէոսի եպիսկոպոսի ասացեալ՝ վասն գալստեան Յովհաննու ի դժոխսն և որք արգելեալքն ի նոցանէ էին» 2. «Սեբէոսի եպիսկոպոսի ասացեալ ճառ՝ վասն մատնութեան Յուդայի»։ Մեզ թվում է, սրանք հայ պատմիչ Սեբեոսի հետ կապ չունեն և հունարենից թարգմանված ճառեր են։ Սույն ճառերից առաջինի կապակցությամբ Հ. Ն. Ակինյանն իր 30. 9. 58 թվակիր նամակում մեզ հաղորդել է. «Ինձ կու թուի, թէ այս գրվածքը

«Սեբեոսը» լիներ Հերակլին նվիրված մի գիրք՝ անվերապահորեն կընդունեինք, որ բոլոր վեց պատմիչներն էլ «Հերակլի պատմությունը» հիշատակելով նկատի են ունեցել այս գիրքը։ Բայց քանի որ գրքի մեզ հետաքրքրող մասը հեղինակն ինքը կոչել է Խոսրովի անվամբ և մյուս կողմից էլ՝ վեց պատմիչներից հինգը այս գրքից չեն օգտվել՝ պետք է ենթադրել, որ նրանց հիշատակած Հերակլի պատմությունը եղել է Հերակլին նվիրված մեկ ուրիշ գրվածք։

Քանի որ վեցերորդ պատմիչը՝ Ասողիկը, նույնպես հիշատակում է մյուս հինգ պատմիչների նշած միևնույն խորագիրը՝ բնական է մտածել, որ նա էլ է նկատի ունեցել միևնույն գիրքը։ Իսկ եթե Ասողիկին բացառենք՝ պետք է ընդունենք, որ նա 10-րդ դարում կանխել է Շահխաթունյանին, և Խոսրով Ապրվեզին նվիրված Պատմությունը նույնացրել է Սեբեոսի «Հերակլի պատմության» հետ։ Միայն այս կերպ թերևս կարելի լիներ բացատրել Ասողիկի բացառիկ գիրքը՝ մյուս բոլոր պատմիչների համեմատությամբ։

Հավանաբար Հ. Գ. Անանյանը նույնպես Ասողիկի այս բացառիկությունը նկատի ունի, երբ գրում է. «Ուստի, մեզի կը մնա անգամ մը ևս ըսել, թե գոնե Ասողիկի համար Սեբեոս եպիսկոպոսի «Հերակլի պատմությունը» նույն ինքն մեր ձեռքը հասած և Սեբեոսի անունով հրատարակված պատմությունն է»[52]։ Մեր ընդգծած արտահայտությամբ արված վերապահումն անհրաժեշտ է, որովհետև Ասողիկից բացի մյուս բոլոր պատմիչների դեպքում անհնարին է պնդել, թե նրանք «Հերակլի պատմությունը» հիշատակելով նկատի են ունեցել ներկա «Սեբեոսը»։

Ելնելով այն փաստից, որ Սեբեոսին վերագրվող Պատմությունից օգտված ոչ մի պատմիչ այս Պատմության հեղինակի անունը չի նշել, ինչպես նաև հենվելով Պատմության հնագույն ձեռագրի (որը հեղինակի անուն չունի) վրա՝ մենք հանգել ենք այն եզրակացության, որ Ասողիկի օգտագործած ձեռագիրը նույնպես հեղինակ չի ունեցել և դա է պատճառը, որ նա ներկա «Սեբեոսից» լայնորեն օգտվելով հանդերձ՝ իր ցուցակում այս երկի հեղինակի անունը չի նշել։ Ճիշտ միևնույն պատճառով Ասողիկի ցուցակում չեն նշված ևս երկու կարևոր աղբյուրներ՝ Անանիա Շիրակացուն վերագրվող «Ժամանակագրությունը»[53] և «Տիեզերական պատմության» 2-րդ հանդեսի 5-րդ գլխի ամբողջ

---

անվավերական գրականության կցատկանի։ Սամուել Անեցի, էջ 77 կը հիշէ անվավերականաց շարքին մէջ զՍերբոս։ Հմմտ. նաև Կիր. Գանձակեցի, էջ 29։ Չեմ կարծեր, թե նվաերիս նմանացոյ հետ աղերս ունենա։ Իսկ Սեբէոս Եպիսկոպոսի վասն մատնութեան Յուդայի կարող է հարասացութիւն մ ըլլայ նա. նմանացոյ ճառին»։

Հ. Ն. Ակինյանը մեր Մատենադարանի № 948 ձեռագրում գտնվող հիշյալ երկու ճառը անձամբ չի տեսել, և իր դատողությունները հիմնել է՝ առաջին ճառի կապակցությամբ՝ «Հանդ. ամս.» 1929 էջ 143-ում, իսկ երկրորդ ճառի կապակցությամբ՝ «Հանդ. ամս.» 1957, էջ 358 տպված ճառերի վրա, որոնք, սակայն, տարբերվում են մեր Մատենադարանի ձեռագրում գտնվող անտիպ ճառերից։ Հետևաբար Ն. Ակինյանի դատողությունները մեր ձեռագրին չեն վերաբերում։

52 Անանյան, էջ 19։

53 Այս «Ժամանակագրությունից» քաղված նյութերը գտնում ենք Ասողիկի 137—142 էջերում։ Անանուն Ժամանակագրությունը միջնադարում ամենից շատ օգտագործված աղբյուրներից է, որից օգտվել են Կաղանկատվացին, Ուխտանեսը, Ասողիկը, Սամվել Անեցին, Հ. Սարկավագը, Վարդան Արևելցին, Վարդան Բաղիշեցին և ուրիշներ։ Այս երկը նույնպես շատ շատ է գրկվել իր վերնագրից։ Այդ իսկ պատճառով էլ ոչ ոք նրա հեղինակի անունը չի նշել։ Այսպես օրինակ,

նյութը պարունակող աղբյուրը, որի հեղինակին Ասողիկն այդ գլխի վերնագրի մեջ նշել է «յայլմէ պատմագրէ» բառերով:

Հ. Գ. Անանյանը գտնում է, որ Ասողիկն իր աղբյուրը չի նշել, որովհետև դա համարել է այնպիսի հանրածանոթ մի աղբյուր, որ առանց նշելու էլ կիմացվեր: Չնշելու համար մի երկրորդ պատճառ էլ կարող էր լինել, ըստ Անանյանի, այն, որ Ասողիկը և միջնադարյան մյուս պատմիչները «չունեին մեր գիտական մեթոդին խստապահանջությունը՝ ամեն մեջբերության տեղը հիշելու: Ասողիկ ալ ոմանց անունը տված է և ուրիշ շատերունը չէ հիշած»[54]: Այսուհանդերձ մեզ հայտնի է, որ մեր գիտական մեթոդի խստապահանջությունը չունեցած պատմիչները սովորություն են ունեցել առաջին հերթին նշելու հենց հանրածանոթ աղբյուրները, որովհետև դրանք բարձրացնում են իրենց գրքերի հեղինակությունը: Ասողիկն ինքը բազմիցս հիշատակել է նշանավոր պատմիչների. «Մինչև ցայսր ասացաւ ի մեծէ պատմագրէն Մովսիսէ», «որպէս ուսուցանէ Պատմութիւնն Եղիշէի վարդապետի», «զոր ուսուցանէ քեզ Ղազար Փարպեցին», «որպէս պատմէ Բուզանդ», «որպէս ուսուցանէ քեզ Պատմութիւնն Շապհոյ Բագրատունւոյ» և այլն[55]: Այսքան որոշակի հիշատակությունների դեպքում սպասելի է, որ նշվեր նաև ներկա «Սեբեոսի» անունը, որովհետև Ասողիկը «Սեբեոսից» ավելի շատ է օգտվել, քան իր նշած որոշ աղբյուրներից: Բայց քանի որ ներկա «Սեբեոսը» ձեռագրի մեջ վերնագիր և հեղինակի անուն չի ունեցել՝ Ասողիկը չի իմացել իր աղբյուրի անունը և չի նշել ցուցակում:

Դրասխանակերտցին նույնպես մի օրինակով ցույց է տալիս, որ իր աղբյուրի հեղինակի անունը չիմանալով՝ հարկադրված է եղել գործածելու «բան ճառի» և «ասէ» վերացական արտահայտությունները:

| «Սեբեոս» | Դրասխանակերտցի |
| --- | --- |
| «Կոչէ արքայ Կոստա զՎարազտիրոց<br>զորդի Սմբատայ Բագրատունւոյ...<br>Առնէ զնա մարզպան և արձակէ ի Հայս:<br>Եւ իբրև եկն նա ի Հայս...<br>զի մեռեալ էր երանելին Կոմիտաս<br>կաթողիկոսն... առաջնորդութեամբ<br>Թէոդորոսի Ռշտունեաց տեառն<br>ընտրեցին զոմն անապատական<br>յԱբրահամեան տանէ, որում<br>անուն էր Քրիստափոր... որոյ<br>լեզու խիր էր իբրև զսուր սուսեր...<br>և արկ սուր ի մէջ ընդ ասպետ | Տուեալ Կոստայ զմարզպանութիւնն<br>Հայոց Վարազտիրոցի՝ որդւոյ Քաջին<br>Սմբատայ, առաքէ զնա յիւրական<br>յաշխարհն: Իսկ եկեալ նորա՝ գտա<br>հրաժարեալ ի կենաց սուրբ զմեծ<br>հայրապետն Կոմիտաս... Քրիստափոր<br>ոմն յԱբրահամեան տանէ խորհրդակ-<br>ցութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց<br>տեառն՝ կացուցանէ յաթոռ հայրապե-<br>տութեանն: Զամանէ բան ճառի. թէ<br>բութիւն իմն յիւրում լեզուի<br>կրէր. և ասէս այսորիկ, ասէ, ա- |

«Ուխտանես» (հ. 1, էջ 82) գրում է «Որպէս ցուցանէ պատմագիրն»: Սույն աղբյուրը կոչվել է նաև «Գիրք կայսերաց» (Ուխտանես, հ. 1, էջ 49, 111: Մաշտոցի Մատենադարան, ձեռագիր № 993, էջ 84, ձ. № 996, էջ 155բ, Ս. Ղազարի մատենադարանի ձեռագիր, № 512), «Կայսերական (կամ «Կայսերաց») պատմութիւն» (Փարիզ, «Բանասէր», 1905, էջ 118—124. Հովհ. Իմաստասէր, 224), «Կայսերք Հռովմայեցւոցն» (Վ. Բաղիշեցի, 184), «այլ պատմութիւն» (Ս. Անեցի, 24, տ. 13—15, ձ. № 993, էջ 86) և այլն:

54 Անանյան, 9:

55 Ասողիկ, էջ 53, 78, 80, 69, 138:

| | |
|---|---|
| (Վարազտիրոց-Գ.Ա.) և ընդ եղբայր իւր չարախօսութեամբ։ | պետն Վարազտիրոց պչարեալ գտանէր ընդ եղբարս իւր։ |
| ...Եդին ի վերայ նորա բամբասանս... և ընկեցին զնա ի կարգէն[56]։ | ...Ի վերայ յարուցեալ նորա՝ բամբասանս... անկանիլ նմա ի պատւոյն[57]։ |

Մովսես Կաղանկատվացին նույնպես ներկա «Սեբեոսից» Վնդոյի և Վատամի մասին տեղեկություններ քաղելիս՝ այս երկի հեղինակի անունը տալու փոխարեն վերացականորեն գրում է. «Սաւյց և ի բուն պատմագրաց այսպէս ծանեար, եթէ Բնդոյ և Վատամ եղբարք՝ ազգայինք Պարսից թագաւորին...»[58]։

Թովմա Արծրունին նույնպես ներկա «Սեբեոսը» օգտագործելով հանդերձ նրա հեղինակի անունը չի նշել (չնայած՝ նա էլ անհրաժեշտ դեպքերում չի խուսափել իր աղբյուրները նշելուց)[59]։ Նույնը պետք է ասել նաև Վարդան Արևելցու կապակցությամբ, որը նույնպես հաճախ նշում է իր աղբյուրները[60], նրանց շարքում՝ նաև ոչ այնքան տարածված աղբյուրներ (Փոտ, Վանական վարդապետ, Վահրամ որդի Տիգրանի)[61]։ Այսպես է վարվել նաև Ասողիկի օրոք՝ 981 թ. ընդօրինակված՝ № 2679 ձեռագրի գրիչը, որը ներկա «Սեբեոսից» (ՍԵԳ, էջ 133—135) ընդօրինակել է մի հատված[62], առանց որևէ հեղինակի անվան։

Այսպիսով՝ ներկա «Սեբեոսից» օգտված ոչ մի մատենագիր, նրանց թվում նաև՝ Դրասխանակերտցին և Արծրունին, չի նշել որևէ հեղինակի անուն։ Նույնիսկ այն դեպքում, երբ անհրաժեշտ է եղել այդ անունը նշել՝ Դրասխանակերտցին չի տվել պահանջվող անունը։ Կնշանակի՝ Ասողիկի օրոք ձեռագիրն արդեն կորցրել էր իր խորագիրը և Ասողիկը հենց այդ պատճառով է, որ ներկա «Սեբեոսից» լայնորեն օգտվելով հանդերձ՝ իր ցուցակում չի նշել նրա հեղինակի անունը։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. «Սեբեոսի Պատմությունը» պարունակող հնագույն ձեռագրի (№ 2639) մեջ այս Պատմության հեղինակի անունը չի նշված։ Բովանդակ հայ մատենագրության մեջ գոյություն չունի սույն երկից քաղված ոչ մի հատված, որին կից նշված լիներ իր հեղինակի անունը։ Այսպիսով՝ Սեբեոսին վերագրված Պատմության հեղինակն ստույգ որոշելու համար չկա մատենագրական ոչ մի հիմք։

2. Վարդան Բաղիշեցին այս գիրքը գրանցել է ըստ նրա գլխավոր դերակատարի՝ Խոսրովի անվան։ Ինչպես երևում է, Գանձակեցու ցուցակում նշված Խոսրովը նույնպես «Խոսրովի պատմությունից» բխող մի անուն է, որը գտնվելով պատմիչների անունների շարքում՝ այժմ ընկալվում է որպես պատմիչի անուն։ Գանձակեցին V դարի պատմիչներին թվելիս Խոսրով անունով պատմիչ չի հիշատակում։ Հետևաբար՝ նրա ցուցակում գտնվող Խոսրովը.

56 ՍԵԳ, էջ 98։

57 Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 75—76։

58 Մովսես Կաղանկատվացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1913, էջ 195, Հմմտ. ՍԵԳ էջ 33—36։

59 Թովմա Արծրունի, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 27, 58 և այլն։

60 Վարդան Արևելցի. Վենետիկ, 1862, էջ 12, 20, 54, 94 և այլն։

61 Նույն տեղում, 85, 146, 94։

62 Մաշտոցի անվան Մատենադարան, ձ. № 2679, էջ 191—192։

հիշատակված լինելով Սեբեոսի և Ղևոնդի հարևանության մեջ, համընկնում է «Խոսրովի Պատմության» հեղինակին և եթե անգամ պատմիչ է՝ դարձյալ կարող է նույնացվել այդ երկի հեղինակի հետ:

3. Սամվել Անեցին իր աղբյուրների շարքում հիշատակում է նաև Սեբեոսին, բայց նրա գրքում չկա ներկա «Սեբեոսից» քաղված ոչինչ: Հավանաբար՝ նա նկատի է ունեցել իրական Սեբեոսին: Քանի որ ներկա «Սեբեոսը» Հերակլի պատմություն չէ, ինչպես նաև՝ հաշվի առնելով այն փաստը, որ «Հերակլի պատմությունը» հիշատակող հինգ պատմիչները ներկա «Սեբեոսից» չեն օգտվել՝ պետք է ենթադրել, որ վեցերորդ պատմիչը՝ Սամվելը նույնպես նկատի չի ունեցել ներկա «Սեբեոսը» և ակնարկել է մյուս բոլոր պատմիչներին ծանոթ «Հերակլի պատմությունը»: Այսպիսով մենք վերստին հաստատում ենք մեր մենագրության 28-րդ էջում հայտնված հետևյալ ենթադրությունը. «Այսպիսով, կարելի է ենթադրել, որ Սեբեոսի գրած Հերակլի Պատմությունը դեռ չի գտնված»:

4. Սեբեոսի հեղինակությունը հաստատող փաստերի բացակայության պայմաններում խնդրո առարկա երկը պետք է հրատարակվեր այնպես, ինչպես հասել է մեզ, այսինքն՝ առանց որևէ հեղինակի անվան: Բայց քանի որ, ինչպես իրավացիորեն նշել է Հ. Պ. Անասյանը, «դարէ մը աւելի արդեն ընդհանրացած և ընդունված է Պատմության հեղինակը՝ հանձին Սեբեոս եպիսկոպոսի»[63], մենք նպատակահարմար ենք գտնում երկը վերահրատարակելիս պայմանականորեն պահպանել Սեբեոսի անունը:

## 2

## ԽՈՍՐՈՎ ԹՈՐՈՍՅԱՆԻ ԳՐԱԽՈՍԱԿԱՆԸ

Խոսրով Թորոսյանի գրախոսականի վերնագիրն է «Սեբեոս պատմիչը և նրա երկը»[64]: Սրա տակ զետեղված է 41 էջանոց մի գրություն, նվիրված մեր մենագրության մեջ 14 էջ զբաղեցնող մի հատվածի, որի վերնագիրն է «Սեբեոս թե՞ Խոսրով»[65]:

Գրախոսը «Սեբեոսի հեղինակային իրավունքները» «հաստատել է» վերջին էջերում, գրելով՝ «...ավելորդ չենք համարում վկայակոչել մի քանի փաստ, որոնք հաստատում են Սեբեոսի հեղինակային իրավունքները» (87)[66]: Մենք նույնպես վերջին էջերում կքննենք ավելորդ չհամարված այդ «մի քանի փաստը»: Իսկ մինչ այդ՝ ծանոթանանք այդ փաստերին նախորդող էջերին:

«Գրախոսականն» սկսվում է «Սեբեոսի Պատմության» տարբեր հրատարակությունների առաջաբաններից քաղված զանազան տեղեկություններով: Նրանցից մեկը վերաբերում է «Սեբեոսի Պատմության» հնագույն ձեռագրին. «Այս ձեռագիրն,—գրում է Թորոսյանը,—ընդօրինակված է եղել 1568 թվակա-

---

63 Անասյան, էջ 22:

64 Թորոսյան Խոսրով, *Սեբեոս պատմիչը և նրա երկը*: «Բանբեր Մատենադարանի», № 9, 1969, էջ 59—100:

65 Աբգարյան Գ., *«Սեբեոսի Պատմությունը» և Անանունի առեղծվածը*, Երևան, 1965, էջ 15—29:

66 Թորոսյանի հոդվածի էջահամարները այսուհետև նշելու ենք հոդվածից քաղված մեջբերումների կողքին, փակագծերի մեջ:

նին... Հ. Շահխաթունյանի մակագրությունը կրող այս ձեռագիրը կորել է» (59)։ Սույն տեղեկության մեջ կա երեք սխալ, որոնք պետք է վերացվեն, որպեսզի չթափանցեն սեբեոսագիտության մեջ և թյուրիմացություն չստեղծեն «Սեբեոսի Պատմության» հնագույն ձեռագրի վերաբերյալ։

Առաջին։ Գրախոսողը ասորի գործիչ Հակոբ Մծբնացու Աղոթքը շփոթել է «Սեբեոսի Պատմության» հետ։ Այս Պատմության առաջին հրատարակիչ Թ. Միհրդատյանն իր հրատարակության առաջաբանում նշել է Մծբնացու երկի ընդօրինակության թվականը՝ 1568։ Իսկ Թորոսյանը կարծել է, թե դա «Սեբեոսի Պատմության» ընդօրինակության թվականն է։

Երկրորդ։ Շահխաթունյանը հայտնաբերել է ոչ թե գրախոսողի կարծած ձեռագիրը, այլ՝ սեբեոսագետներին քաջ հայտնի և 1672 թ. Բաղեշի Ամրդոլու վանքում ընդօրինակված այն ձեռագիրը, որի առաջին նկարագրությունը ֆրանսերեն թարգմանությամբ լույս է տեսել մեր հոդվածի սկզբում հիշատակված Մ. Բրոսսեի գրքում „Rapports sur un voyage, էջ 45, 49 և այլն)։

Երրորդ։ «Հ. Շահխաթունյանի մակագրությունը կրող (իրականում այդպիսի մակագրություն երբեք չի եղել ու չկա.—Գ. Ա.) այս ձեռագիրը» ոչ թե կորել է, ինչպես կարծել է գրախոսողը, այլ այժմ պահվում է մեր Մատենադարանում (ձ. № 2639) և նրա հիման վրա է պատրաստված «Սեբեոսի Պատմության» վերջին հրատարակությունը (1939 թ.)։

Ձեռագրի վերաբերյալ իր իմացած այսօրինակ տեղեկությունները սպառելուց հետո գրախոսողն անցնում է այլ տեղեկությունների, որոնց շարքում է դասվում նաև Ստ. Մալխասյանցի առաջաբանից նույնությամբ արտագրված հետևյալ կարծիքը. «Ուրեմն ոչ մի տարակույս չի մնում, որ ներկա պատմական գրվածքը Սեբեոսինն է»։ Թորոսյանը Մալխասյանցի այս եզրակացությունը կոչել է «ամեն մի տարակույս բացառող եզրակացություն» (61)։

Տեսնենք՝ որոնք են այդ եզրակացության հիմքերը։ Առաջին. «Ոչ մի ուրիշ հին հայ հեղինակ,—գրում է Մալխասյանցը,—այնպես մանրամասն չէ գրել Հերակլի արշավանքների պատմությունը, ինչպես այս գրվածքը և վերահիշյալ միջնադարյան հեղինակները Սեբեոսին են վերագրում Պատմութիւն ի Հերակլն (60)։ Իրականում, սակայն, հասկանալի է, որ Հերակլի մասին համեմատաբար ավելի շատ տեղեկությունները դեռևս բավարար չեն, որպեսզի Սեբեոսին վերագրվող երկը դառնա «Հերակլի պատմություն»։ Պետք է Պատմությունն իր հեղինակի կողմից շարադրված լիներ որպես հենց Հերակլի պատմություն։

«Ամեն մի տարակույս բացառող եզրակացության» երկրորդ հիմքն այն է, թե «միջնադարյան հեղինակները Սեբեոսին կոչում են եպիսկոպոս, և արդարև, 7-րդ դարի կեսերին մոտ, ուրեմն Հերակլի արշավանքների ժամանակ, Հայաստանում ապրել է մի ումն եպիսկոպոս Սեբեոս անունով, որը մասնակցել է Դվինի եկեղեցական ժողովին» (60)։ Այստեղ սոսկ նշված է այն հանրահայտ իրողությունը, որ 7-րդ դարում գոյություն է ունեցել Սեբեոս անունով մի եպիսկոպոս։ Բայց այս մասին մինչև այժմ ոչ ոք չի կասկածել։ Կասկածելին Սեբեոսի և նրան վերագրվող երկի կապն է։

Երրորդ և վերջին պատճառաբանությունը Սեբեոսին վերագրվող երկում Բագրատունիներին հատկացված ուշադրությունն է, որը, սակայն, գործնական նշանակություն կունենար միայն այն դեպքում, եթե ապացուցված լիներ, որ քննարկվող երկը գրված է իսկապես Սեբեոսի կողմից և եթե հաստատված

լինեն, որ Սեբեոս պատմիչը և Բագրատունյաց եպիսկոպոսը միևնույն անձերն են։ Այս «եթեներից» դեռ ոչ մեկն ապացուցված չէ։

Ինչպես տեսնում ենք, գրախոսողի «ամեն մի տարակույս բացառող եզրակացության» բոլոր երեք պատճառաբանություններն էլ տարակուսելի են։

Թորոսյանը փորձել է խոսել նաև ներկա «Սեբեոսին» կից «գրությունների» կապակցությամբ մեր կատարած աշխատանքի մասին, կարծելով, թե մենք պարզապես կրկնել ենք նախորդների արածը։

Բայց տեսնենք՝ ինչ են ասում մասնագետները։

Հայտնի է, որ Ստ. Մալխասյանցը «գրությունները» անվերապահորեն հրատարակել է Սեբեոսին վերագրվող երկի կազմում՝ որպես նրա հարազատ մաս։ Այսպիսով նա ժխտել է «գրությունների» ուրույն ծագման և նրանց առանձին հեղինակի՝ Անանունի գոյության հնարավորությունը։ Այս կարծիքն այնքան էր արմատացել հայագիտության մեջ, որ «Անանունի» հարցադրումը մեղանում գրեթե դադարել էր գործածվելուց։ Մեր ուսումնասիրություններից հետո, սակայն, Անանունի ժամանակագրական աղյուսակներով հատկապես զբաղված՝ դոկտոր Գ. Խ. Սարգսյանը գրում է. «Մենք վերադառնում ենք անցյալում կիրառված ու այժմ անսովոր թվացող Անանունի հարցադրմանը այն պատճառով, որ Գ. Աբգարյանի վերջին հետազոտությունները պարզեցին, որ մեզ հետաքրքրող հատվածը առնչություն չունի Սեբեոսի Պատմության հետ և կցվել է նրան թյուրիմացաբար»[67]։ Այսպիսով՝ մասնագետը ոչ միայն հաստատել, այլև գործնականում իր հետազոտության համար ելակետ է ընդունել Գ. Աբգարյանի ուսումնասիրության այն նոր արդյունքը, որը Թորոսյանին թվացել է նախորդների արածի կրկնություն։

Հ. Պողոս Անանյանը գրում է. «Մալխասյանցն... իր քննական հրատարակությամբ (1939) կարծես հարցը փակեց... Սակայն հարցը փակված չէ... Գ. Աբգարյան այս հարցը կրկին կարծարծէ։ Արդեն զանազան արժեքավոր հոդվածներով իր նոր կարծիքը հայտնել էր, 1965-ին գրքույկով մը կամփոփէ իր տեսակետները... Աբգարյանի տված լուծումով՝ բավական գոհացուցիչ բացատրություն մը կգտնէ Սեբեոսի առեղծվածը»[68]։

Գիտնականը միևնույն կարծիքը հայտնել է նաև իր հաջորդ աշխատության մեջ, գրելով՝ «Սեբեոսի պատմության մասին նոր ուսումնասիրություն, հրատարակված Գ. Վ. Աբգարյանի կողմե, նոր հարցեր կդնե... Հարցեր, որոնք թեև բազմաթիվ անգամներ քննված, բայց այժմ կներկայանան նոր լույսի տակ»[69]։

Իսկ Թորոսյանը գրում է. «Գ. Աբգարյանը հղվում է հիմնականում նույն փաստերն ու փաստարկները, որ շրջանառության մեջ են դրել վերը նշված ուսումնասիրողները» (62)։ «Վերը նշված ուսումնասիրողներն» են՝ «Ք. Պատկանյանը... Լանգլուան, Հյուբշմանը, Գուտշմիդը... Բաումգարտները, Ֆեթթերը, Մառը... և ուրիշներ» (62)։ Թվում է, թե գրախոսողը անձամբ ծանոթ է այդքան պատկառելի գիտնականների՝ հայերեն, ֆրանսերեն, գերմաներեն, ռուսերեն երկերին և նրանց մեջ գտել է Աբգարյանի «հղված» փաստերը։ Սակայն պարզվում է, որ նա տառացի հերթականությամբ արտագրել է Սեբեո-

67 Սարգսյան Գ. Խ., *Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ժամանակագրական համակարգը, Երևան, 1965, էջ 14։*

68 *«Բազմավեպ», 1969, թիվ 8—10, էջ 262 և 266։*

69 Անանյան Պ., *Ո՞վ է Սեբեոսի Պատմության հեղինակը — «Բազմավեպ», 1970, էջ 5։*

*սին վերագրվող երկի 4-րդ հրատարակության առաջաբանի ԽԱ—ԾԸ էջերում թվարկված անունները և այս անգամ էլ իր արտագրածը ճիշտ չհասկանալով՝ կարծել է, թե մենք սոսկ «հուլավել» ենք ուրիշների «փաստերն ու փաստարկները»։ Նա բառացի հայտարարում է, թե իր «գրախոսած» գրքում «նախորդ ուսումնասիրությունների ու փաստերը սոսկ կրկնվում են և ներկայացվում որպես ինքնուրույն հետազոտություն» (61)։ Նրա սովոր գրչի տակից այսքան հեշտությամբ դուրս եկած կարծիքը մասնագետի ականջին հնչում է որպես անսովոր ու տհաճ մի մեղադրանք, ուստի տեսնենք, թե գրախոսված աշխատության ո՞ր մասին է վերաբերում այն։ «Քննարկվող աշխատության նշված մասի հիմնական, գլխավոր միտքն այն է, որ Ա և Բ գրությունները Սեբեոսի Պատմությանը չեն պատկանում» (62)։* Գրախոսողն այս մասից չի բերել իր ասածը հաստատող բացառապես ոչ մի փաստ։ *Եվ չէր էլ կարող բերել, որովհետև նրա վերացական հայտարարությունը հաստատող ոչ մի փաստ չկա մեր գրքում։* Նա պարզապես չի կարողացել տարբերել նախորդների արծարծած հարցերը մեր կողմից վերստին քննված և նոր լուսաբանության արժանացած հարցերից։

*Իր «կարծիքը» բովանդակող նախադասության վրա նա դրել է ծանոթագրության նշան և տողատակային ծանոթագրությունների բաժնում «ներկայացրել է» մեր սրբագրած չորս գրչական վրիպակների վերաբերյալ կատարված աշխատանքը։*

Առաջին վրիպակ։ *«Սեբեոսի Պատմության» մեզ հասած ձեռագրերում Մամիկոնյան տոհմի ավանդական նախնիներից մեկի՝ Մամիկի անունն աղավաղվելով դարձել է Մամիկոն։ Մենք որոշակի փաստերի միջոցով ապացուցել ենք, որ դա վրիպակ է և ուղղել ենք աղճատված բնագիրը։ Թորոսյանը՝ անծանոթ միջավայրում չփոթվելով՝ կարծել է, թե միևնույն աշխատանքը կատարել է նաև Ն. Ադոնցը և ընթերցողին ներկայացրել է նրա հետևյալ սրբագրական առաջարկը՝* «Читать последние слова отрывка так: *Եղեն յազգ մեծ ի Մամիկայ* (не *Մամիկոնայ* как в печ.) *և Կոնակայ» (61)։ Եթե գրախոսողը Ադոնցի խոսքը կիսատ չթողներ և շարունակեր մեջբերումը՝ ընթերցողը կնկատեր, որ Ադոնցի սրբագրական առաջարկը* («Читать последние слова отрывка так») *վերաբերում է ոչ թե Մամիկ անվանը, այլ՝ անմիջապես Կոնակ անվանը հաջորդող այն բառերին («յայսմանէ այն է ազարապետ»), որոնք Թորոսյանը կրճատել է և որոնց մասին ընթերցողը կարող է կարդալ մեր գրքի 94-րդ էջում։*

*Ադոնցի սրբագրած արտահայտությունը կրճատելուց հետո հոդվածագիրը կրճատել է նաև Մամիկ անվան սրբագրությունը* հիմնավորող մեր բոլոր ապացույցները *և թողել է սոսկ վերացական սրբագրական* առաջարկը *(«պետք է ուղղել ի Մամիկայ և ի Կոնակայ»)։ Այսպես անդամահատելով մի կողմից Ադոնցի, մյուս կողմից մեր շարադրանքը, նա տպավորություն է ստեղծել, թե Ադո՛նցն էլ, մե՛նք էլ այլ բան չենք արել, բան սոսկ* առաջարկել *ենք սրբագրել Մամիկոն անունը։*

*Եթե նա ծանոթ լիներ Սեբեոսին վերագրվող երկի թարգմանություններին, կիմանար, որ քննարկվող անունը սրբագրված էր Ադոնցից դեռևս 39 տարի առաջ, Սեբեոսին վերագրվող երկի ռուսերեն թարգմանության հենց տեքստի մեջ*[69ա]*։ Ադոնցը պարզապես օգտագործել է սրբագրված անունը (փակագծերի*

[69ա] История имп. Иракла, СПБ, 1862 *էջ 14։*

մեջ մատնանշելով հայերեն բնագրի սխալ ձևը): Անունը սրբագրված է նաև ֆրանսերեն թարգմանության մեջ[70]: Հ. Հյուբշմանը նույնպես գերմաներեն մասնակի թարգմանության առաջաբանում[71] գործածել է սրբագրված անունը՝ վրիպակն իջեցնելով տողատակ:

Գրախոսողին անծանոթ մնացած սույն գիտելիքները մասնագիտական աշխարհում նույնքան հանրածանոթ են, որքան հենց այն տարրական գիտելիքը, թե Խորենացին Մամիկոնյանների նախահայր է համարում Մամգունին: Եվ ճիշտ այնպես, ինչպես որ Մամգունի մասին խոսելիս միշտ չէ, որ մասնագետները անհրաժեշտ են համարում անպայման նշել, որ առաջինը Խորենացին է հայտնել նրա անունը, այդպես էլ՝ սեբեոսագետներից ոչ ոք Մամիկոն անունը սրբագրելիս չի նշել նախորդ սրբագրողներից ոչ մեկի անունը: Այդպես ենք վարվել նաև մենք: Հենց Աղոնցն իսկ «բացարձակապես ոչ մի խոսք, ոչ մի ակնարկ չի արել նախորդ ուսումնասիրողների մասին»: Ահա թե ինչու մեր հասցեին ուղղված՝ Թոփույանի խոսքը («նա բացարձակապես ոչ մի խոսք, ոչ մի ակնարկ չի արել նախորդ ուսումնասիրողների մասին») բացահայտում է իր հեղինակի վատ տրամադրությունը և ուրիշ ոչինչ:

Ներկա «Սեբեոսի» հայերեն բնագիրը մինչև այժմ մնում է չսրբագրված: Նույնիսկ Ք. Պատկանյանը, որ ռուսերեն թարգմանության մեջ արդեն սրբագրել էր անունը, գրաբար բնագիրը հրատարակել է չսրբագրված: Ստ. Մալխասյանցը նույնպես անունը չի սրբագրել: Ինչպես թարգմանիչները, այնպես էլ գրաբար բնագրի հրատարակիչները չեն գտել իրենց ընդունած կամ մերժած սրբագրությունը հիմնավորող ոչ մի փաստ: Առաջին անգամ մեր մենագրության մեջ է, որ հենց ներկա «Սեբեոսից» քաղված երեք փաստերի հիման վրա ապացուցված է, որ այդ երկի նախնական բնագրում եղել է Մամիկ, և ոչ՝ Մամիկոն: Գրաբար բնագիրը առաջիկայում հրատարակվելու է ըստ մեր ապացույցի:

Երկրորդ վրիպակ: «Զանատորագրեալ» բառն աղավաղվելով՝ դարձել է «զանատարագրել»: Մենք հայտնել ենք, որ բառի սրբագրությամբ զբաղված 14 գիտնականներից 9-ը վրիպել են, իսկ 5-ը ճիշտ են վերծանել: Թոփույանը ճիշտ վերծանածներին ու վրիպածներին չտարբերելով՝ բոլորին խառնել է իրար և հայտարարել է, թե մենք «բոլոր» 14 սրբագրողներին համարել ենք վրիպածներ: Չարաշահելով «բոլոր» բառը՝ նա գրում է. «Այլ կերպ՝ Գ. Աբգարյանը ուղղակի ասում է, որ իրենից առաջ ոչ մի ուսումնասիրող, բացարձակապես ոչ մեկը, չի առաջարկել **զանատարագրել**-ը կարդալ **զանատորագրեալ**» (62): Այս հեշտաբուխ մեղադրանքի հիմնազուրկ լինելը բացահայտելու համար վկայակոչենք մեր աշխատության 137-րդ էջում նշված այն հինգ մասնագետներին, որոնք մեզանից առաջ առաջարկել են «զանատարագրել»-ը կարդալ «զանատորագրեալ»: Մենք սևով սպիտակի վրա գրել ենք. «**Մատենադարանի** №№ 2867 և 3122 ձեռագրերի գրիչներն անցյալ դարում **վերականգնել են** (ուրեմն ոչ միայն առաջարկել, այլև **վերականգնել են**) բառի ուղիղ ձևը՝ **զանատորագրեալ**: Բառը **ճիշտ են թարգմանել**... Գր. Խալաթյանցը[72]... Ստ. Մալխասյանցը... Հ. Մանանդյանը»:

---

[70] Pseudo-Sebeos; —„Journal asiatique", 7—8, Paris, 1905, էջ 136:

[71] Hübschmann H., Zur Geschichte Armeniens, Leipzig, 1875, էջ 5:

[72] Խալաթյանցը բառը սրբագրել է ռուսերեն թարգմանությամբ հանդերձ, ուստի մենք «սրբագրել» բառի փոխարեն գործածել ենք «ճիշտ է թարգմանել» արտահայտությունը և նշել ենք ռու-

Հինգ անունները նշելուց հետո պատահաբար բաց ենք թողել Միհրդատյանի անունը։ Գրախոսողը՝ տպավորություն ստեղծելու համար, թե անվան վրիպումն ինչ որ բան է նշանակում, շտապել է ընթերցողին տեղյակ պահել, թե «փաստը նշել է նաև դր. Մեսրոպ ծ. վ. Գ. Գրիգորյանը» (62)։ Իսկ դոկտոր Մ. Գրիգորյանն ինքն իր սեփական դիտողությունների մասին գրել է. «Վերոգրյալ դիտողությունները... չեն նսեմացներ արժեքը Աբգարյանի աշխատության, որ կարեւոր նպաստ մը կբերե Սեբեոսի Պատմության առնչակից հարցերու ուսումնասիրության»[73]։

Երրորդ վրիպակ: «Վերաբերութիւն» բառը Սեբեոսին վերագրվող երկում սխալմամբ ընդօրինակվել է՝ «վերաբերութեան»։ Ակինյանն ուղղել է վրիպակը, և մենք նշել ենք նրա ուսումնասիրության առաջին հրատարակության համապատասխան տեղը, գրելով՝ «Ն. Ակինյանը (Սեբեոս եպս. Բագրատունեաց և իր Պատմութիւն ի Հերակղ.—«Հանդէս ամսօրեայ», 1923, էջ 405 և այլուր)... ընտրել է բառի այս նշանակությունը»[74]։ Իսկ Թորոսյանը գրում է. «Նրա (Աբգարյանի— Գ. Ա.) ասածից դարձյալ հետևում է. որ... իրենից առաջ ոչ ոք, այդ թվում և Ն. Ակինյանը, չի առաջարկել «վերաբերութեան»-ը դարձնել «վերաբերութիւն» (63)։

Այս նոր արարքի գնահատականը թողնում ենք ընթերցողին։ Իսկ մենք հայտնի դարձնենք ավելի անսպասելին։ Մեր նշած առաջին հրատարակության մասին լռելով՝ Թորոսյանն իր ընթերցողին մատուցել է Ակինյանի ուսումնասիրության երկրորդ հրատարակությունը (Վիեննա, 1924)։ Այս հրատարակության 76-րդ էջից նա արտագրել է հենց այն, ինչ գտնվում է առաջին հրատարակության մեր նշած 405-րդ էջում և տպավորություն է ստեղծել, թե ինքը նշել է ինչ որ բան, որը մենք չենք նշել։ Այնուհետև՝ օգտվելով առիթից, որ մենք, տեղ շահելու նպատակով, փոխանակ Ակինյանին արտագրելու՝ նշել ենք միայն արտագրվելիք էջը՝ ինքն արտագրել է մեր իսկ նշած էջը և տպավորություն է թողել, թե նորություն է հայտնում։

Բառը ճիշտ ըմբռնած չորս մասնագետների (Մառ, Խալաթյանց, Ակինյան, Մանանդյան) շարքում նշել ենք նաև Խալաթյանցի անունը։ Այս անունից ուղիղ հինգ տող հետո գրել ենք՝ «Սեբեոսի Պատմության ավելյալ հատվածի բոլոր թարգմանիչները սխալ են վերծանել բնագիրը»[75]։ Անվանապես նշել ենք սխալ վերծանած բոլոր երեք թարգմանիչների անունները (Ք. Պատկանյան, Վ. Լանգլուա, Ստ. Մալխասյանց)։ Թորոսյանն իր ընթերցողին մոլորեցնելու համար՝ մեր գործածած «բոլոր թարգմանիչները» արտահայտությունը տարածել է նաև Խալաթյանցի վրա, որը երբեք Սեբեոսին վերագրվող երկի թարգմա-

նիչն այն բառը (неописанное), որը Խալաթյանցն ստացել է վրիպակը սրբագրելիս։ Հասկանալի է, որ այս բառը հնարավոր չէր ստանալ վրիպակից, որովհետև վրիպակը բառ չէ, այլ՝ տառերի անիմաստ կուտակում՝ «զանստարագրել»։ Ուրեմն Խալաթյանցը սա դարձրել է բառ («զանստորագրեալ») և ապա նոր է այդ բառը թարգմանել։ Հետևաբար՝ երբ մենք հայտնել ենք, որ Խալաթյանցը բառը ճիշտ է թարգմանել՝ կնշանակի դրանով հայտնի ենք դարձրել Խալաթյանցի ճիշտ սրբագրության փաստը։ Այնինչ՝ Թորոսյանը գրում է. «Գ. Աբգարյանը... ասում է, որ... Գ. Խալաթյանցը միայն ճիշտ է թարգմանել... բայց նա էլ չի առաջարկել Գ. Աբգարյանի կողմից ընդունված ընթերցումը»։ Այսպիսով՝ գրախոսողը նույնիսկ մեր գրքում «неописанное» բառը տեսնելուց հետո էլ չի իմացել, որ դա հենց Խալաթյանցի կողմից ճիշտ սրբագրված «զանստորագրեալ» բառն է։

73 «Հանդես ամսօրյա», 1965, էջ 558։

74 Աբգարյան, էջ 138—139։

75 Անդ, էջ 139։

նությամբ չի դրաղվել: Աշխատությունը գրած լինելով ռուսերեն՝ Խալաթյանցը բնականաբար «Սեբեոսից» քաղված հատվածը բերել է ռուսերեն թարգմանությամբ: Թորոսյանն օգտագործել է այս հանգամանքը և Խալաթյանցին նույնպես հայտարարել է Սեբեոսին վերագրվող երկի թարգմանիչ և նրա վրա է տարածել իսկական թարգմանիչների մասին մեր ասածը: Գրախոսողը կարծես, թե չի նկատել, որ Խալաթյանցի անունը մեր նշած թարգմանիչների շարքում չկա և որ՝ թարգմանիչների անուններից ուղիղ 5 տող առաջ մենք Խալաթյանցի անունը նշել ենք ոչ թե սխալ, այլ ճիշտ վերծանած չորս մասնագետների շարքում:

Այսպիսով՝ փաստը դարձյալ շրջվել է և մեր նշածը դարձյալ ընթերցողին ներկայացվել է որպես չնշված փաստ: Ըստ որում՝ «նշել-չնշելու» ձևական կողմի վրա ընթերցողի ուշադրությունը շեղելով՝ հոդվածագիրը քողարկել է տարբերությունը Խալաթյանցի և մեր վաստակների միջև: Խալաթյանցը, և նախորդ բանասերներից ոչ ոք, չի փաստարկել իր սրբագրական առաջարկը, իսկ մենք «Պիտոյից գրքի» հայերեն թարգմանության մեջ մատնանշել ենք «վերաբերութիւն» բառի գործածության հենց այն առումը, որով ապացուցվում է, որ Սեբեոսին վերագրվող երկի նախնական բնագրում եղել է ոչ թե «վերաբերութեան», այլ՝ «վերաբերութիւն»:

Չորրորդ վրիպակ: «Հին թագաւորացն» արտահայտությունն աղավաղվելով դարձել է «ճինգ թագաւորացն»: Մենք առաջարկել ենք սրբագրել վրիպակը: Թորոսյանն իր գրախոսականի 63-րդ էջում մեր սրբագրական առաջարկը դարձյալ անդամահատելով ստացել է «տառացի նույնություն» մեր և Աճառյանի առաջարկների միջև և նշել է այն փաստը, որ մեր գրքում «նույնիսկ ակնարկ չկա Հ. Աճառյանի... մասին»: Որ Աճառյանի անվան վրիպումը բոլորովին չի համապատասխանում մեր գրքի ընդհանուր բնույթին[56], դա անառարկելի փաստ է: Բայց պետք էր նկատել, որ մեր մենագրության 42-րդ էջում զետեղված է Մալխասյանցի հետևյալ քաղվածքը. «Բանասերներից ոմանք տրամադիր են ճինգ բառը այստեղ կարդալ հին որպես համապատասխան՝ արձանագրության առաջին բառի»: Մալխասյանցի գործածած «բանասերներից ոմանք» արտահայտությունը վերաբերում է առաջին հերթին հենց Աճառյանին: Ուրեմն՝ մենք Աճառյանի վաստակը փաստորեն նշել ենք՝ Մալխասյանցի միջոցով:

Այն էլ ասենք, որ մենք կարող էինք առհասարակ չնշել ոչ մի անուն և, Մալխասյանցի նման, բավարարվեինք «բանասերներից ոմանք» արտահայտությամբ: Գիտության մեջ դա էլ ընդունված ձև է: Կարևորը ներկա դեպքում ոչ թե բանասերների անունների հաշվապահական թվարկումն էր, այլ այն փաստը, որ «հին» և «առաջին» բառերի համադրությամբ մեզանից առաջ

76 Մեր մենագրության մեջ՝ ծրագրված կերպով հավաքված և գրանցված են մեր քննած բառերի սրբագրությամբ զբաղված մեզ ծանոթ բոլոր մասնագետների անունները: Բավական է վերհիշել, որ միայն «զանատարագրեալ» բառի սրբագրության կապակցությամբ նշել ենք 14 մասնագետի անուն: Մեկ առ մեկ հաշվել ենք Պատմության հրատարակիչների ուղղումները և գրել. «Շուրջ քսանական կարևոր ճշգրտումներ կատարել են... Միհրդատյանը, Պատկանյանը, Մալխասյանցը: Հյուբշմանը... Մակլերը... նույնպես զբաղվել են բնագրի ճշգրտմամբ» (135): Բազմիցս առիթներ ենք որոնել՝ գրվատելու նախորդների ջանքերը. «Բանասերներն արդեն քիչ ջանք չեն գործադրել Սեբեոսի Պատմության բնագրի ճշգրտման ուղղությամբ» (14): Հենց մեր կատարած սրբագրությունների մասին հայտնել ենք, որ դրանցից «մի քանիսը բանասիրության մեջ արդեն այս կամ այն չափով քննարկվել են» (136): Սա է նախորդների վաստակի նկատմամբ մեր ցուցաբերած բծախնդիր վերաբերմունքը: Իսկ Թորոսյանը կամեցել է իրականությունն իր ընթերցողին մատուցել հակառակ տեսքով:

զբաղվել են նաև ուրիշները։ Իսկ այդ փաստը մեր գրքում նշված է ոչ միայն Մալխասյանցի, այլև Մատիկյանի և Ակինյանի միջոցով[77]։ Հետևաբար՝ գրախոսը, մեղմ ասած, ճիշտ չի վարվել, երբ Աճառյանի անվան պատահական վրիպման փաստն իր սովորության համաձայն՝ ընթերցողին ներկայացրել է մեղադրական եզրակացության ձևով։

Ավարտեցինք նկարագրությունը չորս գրչական վրիպակների կապակցությամբ Թորոսյանի ձեռնարկած այն գործողությունների, որոնց օրինակով նա ցույց է տվել, թե ինչ կարգի «հմտությամբ» է ինքը կարողացել փաստերը շրջել և ներկայացնել իր կամեցած ձևով։ «Մենք կարող ենք շարունակել այս կարգի օրինակների թիվը,—գրում է նա՝ կարծես թե ակնարկելով փաստերը շրջելու իր «այս կարգի օրինակները»,—որովհետև բերվածով բնավ չի սպառվում դրանց քանակը, բայց խնայենք ընթերցողի ժամանակը։ Ասենք միայն, որ Գ. Վ. Աբգարյանի առաջարկած՝ բնագրի 46 ուղղումներից շատերը առաջարկված են եղել նախորդ ուսումնասիրողների կողմից։ Այստեղ Թորոսյանն իր միտքը դարձյալ կիսատ է թողել։ Սոսկ մեր ընդգծած «առաջարկված են եղել» արտահայտությամբ մեր վաստակի մասին գաղափար կազմել չի կարելի։ Ուստի՝ պետք էր շարունակել միտքը և հայտնել նաև այն, որ առաջարկված են եղել, բայց բավականաչափ չեն փաստարկվել։ Առաջարկված կարող էին լինել անխտիր բոլոր 46 ուղղումները։ Եվ մեր վաստակը դրանից ավելի կմեծանար, որովհետև դա կնշանակեր, որ մենք փաստարկել ենք նախորդների կողմից առաջարկված, բայց չփաստարկված 46 միավոր։

Ծանոթանանք «գրախոսության» հաջորդ էջերին։ Մենք Վարդան Բաղիշեցու՝ 1689—1704 թթ. կազմած ձեռագրացուցակի[78] հետազոտությամբ հայագիտությանը հայտնի ենք դարձրել այն կարևոր փաստը, որ այսօր Սեբեոսին վերագրվող Պատմությունը 17-րդ դարում Սեբեոսին չի վերագրվել և հայտնի է եղել «Խոսրովի պատմություն» խորագրով։ Ճի՞շտ է, Խոսրովը ոչ թե Պատմության հեղինակի, այլ գլխավոր դերակատարի անունն է, բայց նորահայտ փաստը գալիս է հաստատելու № 2639 ձեռագրում գտնվող անվերնագիր երկի հենց հեղինակի խոսքն այն մասին, որ ինքը գրել է ոչ թե Հերակլի, այլ՝ Խոսրովի պատմությունը։

Նորահայտ փաստը միաժամանակ վերացնում է բանասիրական գրականության մեջ տեղ գտած երկու թյուրիմացություն։ Ն. Ակինյանը Բաղիշեցու ցուցակի Խոսրովին համարել է «Մաշտոցի Վարքի» հեղինակ։ Այժմ վերանում է այս արտակարգ սխալը։ Երկրորդ սխալն էլ այն է, որ ցուցակի հրատարակիչ Ս. Տեր-Հակոբյանը կարծել է, թե Ամրդոլու վանքի մատենադարանում ժամանակին գտնվել է «Խոսրով Թարգմանչի Սահակի պատմությունը»։ Նորահայտ փաստի միջոցով վերանում է նաև այս թյուրիմացությունը։

---

77 «Հինգ» բառի սրբագրության հիմնական վաստակը պատկանում է ոչ թե Աճառյանին, այլ՝ Պատկանյանին։ Այդ իսկ պատճառով էլ՝ մեր գրքում նշված է Պատկանյանի անունը և հայտնըված, որ «Պատկանյանի կարծիքը մասամբ կրկնել են Մատիկյանը, Ակինյանը, Անանիկյանը» (էջ 37)։ Որոշակի նշել ենք Մատիկյանի և Ակինյանի աշխատությունների այն էջերը, որոնցում նույնպես գտնում ենք «հին» և «առաջին» բառերի աճառյանական համադրությունը։

78 Ցուցակում հիշատակված և այժմ մեր Մատենադարանում պահվող ձեռագրերից մեկը (№ 1896) ընդօրինակված է 1689 թ., ուստի՝ ցուցակը կազմվել է 1689-ից մինչև 1704 թթ. ընթացքում (Բաղիշեցին վախճանվել է 1704 թ.)։

Փաստի հայտնաբերման մանրամասնությունները մեր գրքում ներկայացված են շատ հակիրճ, որի հետևանքով մեր աշխատանքը սխալ է ընկալվել Թորոսյանի կողմից։ Վերջինս գրում է. «Պրակները միացնող թելերի և տեխնիկական այլ մանրամասնությունների միջոցով Գ. Աբգարյանը մի ավելորդ անգամ ևս (ընդգծումները մերն են—Գ. Ա.) հաստատում է, որ «Վարքը» պարունակող պրակը միացվել է № 2639 ձեռագրին հետագայում» (65)։ Ինչպես տեսնում ենք, մեր ներդրած աշխատանքից գրախոսողին մատչելի են եղել միայն «պրակների թելերը» և «տեխնիկական այլ մանրամասնությունները»... Ըստ որում առաջին անգամ հայտնաբերված փաստը մատուցվել է «մի ավելորդ անգամ ևս հաստատում է» արտահայտությամբ. կարծես թե՝ ուրիշներն արդեն փաստը հայտնաբերել էին, իսկ «Գ. Աբգարյանը մի ավելորդ անգամ ևս հաստատում է»։

Սակավ հետաքրքրաշարժ չեն գրախոսողի պատկերացումները նաև № 2639 ձեռագրում գտնված պատմագրքերի քանակի մասին։ Վարդան Բաղիշեցին հայտնում է, որ այդ ձեռագրում կան վեց պատմագիրք. «Ագաթանգեղոս, Մովսէս, Եղիշէ, Ներսէսի պատմութիւն, Ղազարու Փարպեցոյ և Խորոյվու»[79]։ Այս 6 անունների կողքին եղած «6» թվանշանը ցուցակում աղավաղվելով դարձել է «7». այսպես՝ «կայ ի մէջ է[80] (=7) պատմագիրք»։ Թորոսյանը վրիպակը չնկատելով և հիմք ընդունելով ոչ թե անվանապես թվարկված 6 անունները, այլ ձեռագրում գտնված պատմագրերի քանակին չհամապատասխանող վրիպակային թվանշանը, կարծել է, թե նրա միջոցով՝ «անկախ Գ. Աբգարյանից» կարելի էր պարզել, որ «Վարքը» ձեռագրի մեջ ներմուծվել է հետագայում։ Մեր հայտնաբերած փաստը նորից «հայտնաբերելու» իր պատրաստակամությունը նա արտահայտել է այսպես. «Անկախ Գ. Աբգարյանից, մենք հիմնավոր փաստեր ունենք պնդելու, որ այն ժամանակ, երբ Բաղիշեցին կազմում էր իր ցուցակը՝ Վարքը իրոք չկար ձեռագրի կազմում» (66)։ Թորոսյանի ակնարկած «հիմնավոր փաստը» հիշյալ վրիպակն է, որը եթե իսկապես հիմք ընդունենք, ի դեպ, կստանայինք գրախոսողի կարծածի լրիվ հակառակ արդյունքը։ Այսպես. ձեռագրում այժմ, «Վարքի» հետ միասին, կա ճիշտ այնքան պատմագիրք, որքան որ ցույց է տալիս վրիպակային 7 թվանշանը։ Հետևաբար՝ եթե այդ թվանշանը

---

79 № 2639 ձեռագրում Բաղիշեցու թվարկած վեց պատմագրքերից բացի կան նաև երեք մանրնյութեր՝ «Դաշանց թուղթը», «Սահակի տեսիլը» և Փարպեցու թուղթը։ Սրանք Բաղիշեցին իր ցուցակում չի նշել, որովհետև նրա ընդհանուր սկզբունքն է եղել, ինչպես № 2639 ձեռագրի, այնպես էլ ցուցակում նկարագրված մյուս 30 պատմագրքերի դեպքում, նշել միայն պատմագրքերը։ Այսպես, օրինակ, Մատենադարանի № 3070 ձեռագրում (որը ժամանակին գտնվել է Բաղիշեցու ձեռքին և նշված է ցուցակում) նույնպես կան յոթ պատմագրքեր։ Սրանք Բաղիշեցին գրանցել է, իսկ դրանց կողքին ընդօրինակված ինն կողմնակի նյութերը ցուցակում չեն նշված։ Ըստ որում, այս «կողմնակի» կոչված և ցուցակում չնշված բնագրերի շարքում է նաև այնպիսի մի գործ, ինչպիսին է Վարդան Արևելցու «Աշխարհացույցը»։ Նույնիսկ Մամիկոնյան տոհմի չափածո պատմությունը, որը գտնվում է այժմ Մատենադարանում պահպանվող № 1896 ձեռագրում, ցուցակում չի նշված, որովհետև դա նույնպես պատմագիրք չէ։ (№ 3070 և № 1896 ձեռագրերի գրանցումները՝ «Արարատ», 1903, էջ 181—182, 188)։

80 Հնարավոր է նաև, որ Բաղիշեցին հենց ինքը «Զ(=6)» գրելու փոխարեն շփոթմամբ գրել է «է(=7)»։ Փաստն այն է, որ ցուցակում անվանապես գրանցված են 6 պատմագիրք և ձեռագրում էլ իսկապես գտնվել են 6 պատմագիրք։ Ուրեմն՝ «է(=7)» թվանշանը բացահայտ վրիպակ է։

ճիշտ լիներ, կստացվեր այնպես, որ ցուցակը կազմելու ժամանակ «Վարքը» նույնպես գտնվել է ձեռագրի մեջ։ Այնինչ՝ «Վարքը» ձեռագրի մեջ ներմուծվել է ցուցակը կազմելուց հետո։ Ուրեմն՝ ապացուցելու համար, որ «Վարքը» ձեռագրում չի գտնվել՝ պետք էր նկատել, որ ցուցակում գտնվող «7» թվանշանը վրիպակ է։ Հոդվածագիրը ոչ միայն վրիպակը չի նշմարել, այլև մեզանից դժգոհել է, որ մենք մեր տեսակետը փոխանակ վրիպակի վրա կառուցելու, նկատել և անտեսել ենք վրիպակը....

«Գործերի քանակը ցույց տվող թիվը՝ 7-ը,—գրում է նա,—ստույգ է, որովհետև ցուցակի 34 թվահամարի տակ Բաղիշեցին դարձյալ գրում է է (=7) պատմագիրք» (66)։ Ինչպես տեսնում ենք, վրիպակը որքան շատ է կրկնվել, այնքան ավելի ստույգ է համարվել։ Բայց հայտնի է, որ վրիպակների կրկնության դեպքերը ձեռագրերում այնքան սովորական են, որ բանասերները պատահական թվանշանների վրա տեսակետներ չեն կառուցում։

Բաղիշեցու ցուցակը վրիպակներով առատ է։ Բացի «է» (=7) թվանշանի վրիպակից՝ համեմատիր, օրինակ, նաև՝ «Բ(=2) պատմագիրք այլ կայ... մինն է Դաւիթ վ. պատմագիրք և միւսն Անանիայի Շիրակացւոյ և միւսն Սոկրատ պատմագիրք»։ Ինչպես տեսնում ենք, թվարկված է երեք պատմագիրք, բայց թվանշանը «Բ» (=2) է։ Ցուցակում առկա մյուս վրիպակներից է հետևյալը (էջ 179). «ԺԲ (=12) գիրք այլ պատմագիրք...»։ «ԺԲ» (=12) թվանշանը չի համապատասխանում իրականությանը։

Փոխանակ ցուցակն իր ամբողջության մեջ ուսումնասիրելու՝ Թորոսյանը կարդացել է միայն վրիպակը պարունակող տողերը և կարծել է, թե «Բաղիշեցին գրում է, որ № 2639 ձեռագրում կա 7 գործ, բայց թվարկում է այդ գործերից միայն 6-ի հեղինակին։ Դրանով Բաղիշեցին շատ պարզ ասում է, որ չգիտի 7-րդ գործի հեղինակին» (74)։ Այս կապակցությամբ ավելորդ չէր լինի վերհիշել Էջմիածնի մատենադարանի անդրանիկ ձեռագրացուցակը, որը կազմել է Մանվել Գյումուշխանեցին (1828 թ.)։ Ինչպես տեսանք, ներկա «Սեբեոսն» այդ ցուցակում գրանցված է այսպես՝ «**Պատմութիւն մի անհեղինակ**»[81]։ Ուրեմն, Բաղիշեցին, եթե նույնիսկ չգտներ այս երկը գրանցելու որևէ այլ եղանակ, իր տրամադրության տակ ուներ հենց «**անհեղինակ**» բառը, որով նա կկարողանար նշել այդ երկը։ Բաղիշեցուն ծանոթ են եղել անհեղինակ երկերը գրանցելու նաև զանազան այլ միջոցներ. այսպես, օրինակ՝ «մեկնութիւնք **անծանօթ**», «քահանայի **ումեմն** աշխատեալ», «այլ **բան**»[82] և այլն։ Ինչպես տեսնում ենք, Բաղիշեցին ամենատարբեր ձևերով կարող էր իր ցուցակում գրանցել ներկա «Սեբեոսը», բայց նա այս երկը գրանցելու համար եղանակներ որոնելու կարիք չի ունեցել, որովհետև դա նրան հայտնի է եղել որպես «Խոսրովու պատմութիւն» և նա հենց այդպես էլ գրանցել է իր ցուցակում։

Ընթերցողն սկզբում չի կռահում, թե հոդվածագիրն ինչու է այդպես հետևողականորեն պնդում, թե Բաղիշեցին չի իմացել ներկա «Սեբեոսը» նշելու որևէ եղանակ։ Բայց երբ հետագայում պարզվում է, որ միևնույն հոդվածագիրը ջերմորեն քարոզում է, որ Բաղիշեցին շատ լավ կարողացել է իր ցուցակում գրանցել մեկ ուրիշ «անհեղինակ երկ»՝ այս անգամ արդեն հասկանալի է դառնում, որ «երկու անհեղինակ գործերից» մեկի գրանցման փաստը գրախոսա-

81 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 3801, էջ 209բ։

82 Հմմտ. «Արարատ», 1903, էջ 186, 188։

գին ձեռնատու չի եղել։ Դրա համար էլ նա «հերքել է» մեկի գրանցման փաստը, որպեսզի «ապացուցի», որ ցուցակում գրանցված է «մյուս անհեղինակ գործը»։

«Մյուս անհեղինակ գործ» արտահայտությունը վերցնում ենք չակերտների մեջ, որովհետև իրականում այդ գործը («Սահակի տեսիլը») ունի իր շատ հայտնի հեղինակը, որը նշված է հենց № 2639 ձեռագրում։ Թոփույանը դա ընկալել է որպես «անհեղինակ գործ»...

Այս փաստին ավելի հանգամանորեն կանդրադառնանք ստորև։ Իսկ այժմ տեսնենք, թե ինչպե՞ս է պատահել, որ Թոփույանը վեճ է սկսել մի պատմագրքի՝ «Խորովի։ Սահակի պատմության» շուրջ, որը ձեռագրում գոյություն չունի։ Հարցին պատասխանելու հնարավորությունը տանք իրեն՝ հոդվածագրին։ «Այս հարցին («թե Բաղիշեցին ինչո՞ւ է հիշել Խոսրովի անունը և ձեռագրում եղած ո՞ր գործի հեղինակ է համարել նրան»—Գ. Ա.) թեև հարցականով, պատասխանել է արդեն Ս. Տեր-Հակոբյանը՝ Բաղիշեցու ցուցակի հրատարակիչը։ Ցուցակի Խոսրով անվան վրա նա նշան է դրել և ծանոթագրել. Խոսրովայ թարգմանչի Պատմութիւն Սրբոյն Սահակայ՞։ Բաղիշեցու ցուցակից անկախ նույն կարծիքն է հայտնում նաև Ղ. Ալիշանը, բայց առանց հարցական նշանի, հաստատապես» (71)։

Ահա այստեղ է թաքնված գաղտնիքը։

Ցուցակի հրատարակիչը չիմանալով իր հրատարակած ցուցակում գրանցված ձեռագրի և № 2639 ձեռագրի նույնության մասին (այս փաստը հայտնաբերվեց տասնյակ տարիներ հետո՝ Ն. Ակինյանի կողմից) կարծել է, թե Բաղիշեցին իր ձեռքին ունեցել և ցուցակում նշել է «Խոսրովայ թարգմանչի Պատմութիւն սրբոյն Սահակայ»։ Թոփույանն էլ իր հերթին կարծելով, թե ցուցակի հրատարակիչը «Խոսրովի Սահակի պատմությունը» հիշատակելով նկատի է ունեցել № 2639 ձեռագիրը՝ շրջանառության մեջ է դրել մի պատմագիրք, որն իրականում գոյություն չունի ոչ միայն № 2639 ձեռագրում, այլև առհասարակ...

Թյուրիմացությունից առժել է նաև Հ. Ղ. Ալիշանը, որը ոչ թե «առանց հարցական նշանի, հաստատապես» հայտնել է ցուցակի հրատարակչի կարծիքը, այլ առհասարակ ոչ մի խոսք չի ասել ո՛չ ցուցակի հրատարակչի, ո՛չ էլ № 2639 ձեռագրի մասին...

Բայց մենք շարունակենք։ «Եվ իրոք,—գրում է գրախոսողը,—եթե ձեռագրից հանենք Վարքը՝ կմնա ուղիղ 7 գործ՝ Ագաթանգեղոս (Դաշանց թղթով), Խորենացի, Մեսրոպ Վայոցձորեցի, «Սահակի պատմությունը», Եղիշե, Փարպեցի (թղթով) և Սեբեոս... ինչպես տեսնում է ընթերցողը՝ ապացուցվեց հենց այն, ինչ շատ էր կամեցել, բայց չէր կարողացել անել Գ. Աբգարյանը» (66)։

Աբգարյանի «չկարողացածը» ապացուցելիս «ապացուցողը» դիմել է մի գործողության, որը իսկապես Աբգարյանի ուժերից վեր է։ Նյութերի քանակը մեկ միավորով պակասեցնելու և վրիպակային «7» թվանշանին համարեցնելու դիտավորությամբ՝ նա «Դաշանց թուղթը» միացրել է Ագաթանգեղոսի անվանը, այն դեպքում, երբ նույնիսկ ձեռագրին ընդօրինակող շարքային դպիրը իմացել է, որ դա առանձին մատենագրական միավոր է և ընդօրինակել է Ագաթանգեղոսից անջատ...

Այնուհետև՝ գրախոսողը հայտարարում է «№ 2639 ձեռագրում կա մի գործ, որը Բաղիշեցին և նրա աշակերտները համարում են «Սահակի Պատմություն»

(75)։ Որպես ապացույց՝ նա մատնանշում է այն փաստը, որ «ձեռագրում այս գործը զբաղեցնող թերթերի ստորին լուսանցքներում երեք անգամ... նույն գրչի ձեռքով գրված է՝ Պատմութիւն սրբոյն Սահակայ»։ Այստեղ Թորոսյանը Բաղիշեցուն և իր աշակերտներին վերագրել է բաներ, որոնց մասին նրանք գաղափար չեն ունեցել։ «Բաղիշեցու աշակերտները» ասելով՝ նա նկատի ունի ձեռագիրն ընդօրինակող գրիչներին։ Ուրեմն՝ բաց անենք № 2639 ձեռագիրը և տեսնենք, թե նրանք ինչ վերնագիր են դրել Սահակի տեսիլին։ «Յառաջաբան տեսլեան սրբոյն Սահակայ Պարթեւի Հայոց կաթողիկոսի»։ Ինչպես տեսնում ենք, Բաղիշեցին ու իր աշակերտները տեսիլը գիտել են ոչ թե որպես պատմագիրք, այլ՝ որպես տեսիլ։ Այլ կերպ էլ լինել չէր կարող։ Իսկ Թորոսյանը փոխանակ ցուցադրելու աշակերտների դրած այս վերնագիրը, ընթերցողին մատուցել է ձեռագրի ստորին լուսանցքներում գրված մի լուսանցագրություն, որը վերաբերում է տեսիլի ընդամենը 4 թերթի բովանդակությանը և այն էլ այն 4 թերթերի, որոնք Բաղիշեցու աշակերտները վերնագրել են «Յառաջաբան տեսլեան» (և ոչ՝ «Պատմութիւն Սրբոյն Սահակայ»)։ Կարճ ասած՝ նա թաքցրել է տեսիլի մյուս էջերին վերաբերող այն լուսանցագրությունները, որոնք բնութագրում են ամբողջ տեսիլը և իրենց մեջ պարունակելով հենց «տեսիլ» բառը՝ ցույց են տալիս, որ Բաղիշեցին ու իր աշակերտները Սահակի տեսիլը գիտել են որպես հենց տեսիլ և ոչ՝ պատմագիրք...

Չեղյալ պատմագիրքը որպես իրականություն ներկայացնելիս՝ ընթերցողին մատուցվել է նաև այն լուրը, թե Բաղիշեցու օրոք իբր գոյություն են ունեցել այդ «պատմագրքի» մասին վկայող մատենագիտական ցանկեր։ «Մատենագիտական այս ցանկերը, որոնցում Խոսրով Թարգմանիչը նշվում է որպես Պատմութիւն Սահակայ գործի հեղինակ, կազմվել են կամ ընդօրինակվել Վարդան Բաղիշեցու ժամանակաշրջանում, այլ կերպ՝ Բաղիշեցու ժամանակ էլ շատ լավ հայտնի էր, որ մենք ունեցել ենք... Պատմութիւն Սահակայ և դրա հեղինակը Խոսրով Թարգմանիչն է» (74)։ Գրախոսողն այս անգամ էլ ընթերցողին չի հայտնել այն մասին, որ «Խոսրովի Սահակի պատմության» առաջին տեղեկությունը պատկանում է Բաղիշեցու մահից հետո՝ 1724 թ. կազմված մի մատենագիտական ցանկի հեղինակի։ Վերջինս, ինչպես երևում է, ձեռագրերից մեկում տեսել է Սահակին վերաբերող մի անհեղինակ բնագիր (իսկ այդպիսիները ձեռագրերում կան), որն ընդօրինակված է եղել 7—8-րդ դդ. մատենագիր Խոսրով Թարգմանչի երկերի կողքին, և տպավորություն է ստացել, թե դրա հեղինակն էլ է Խոսրովը։ Սրա հիման վրա կամ մեզ անհայտ մեկ այլ պատճառով, առաջին անգամ 18-րդ դարում, այն էլ, կրկնում ենք, միայն Բաղիշեցու մահից հետո կազմված մի ցուցակում, գրանցվել է Խոսրովի անունը որպես «Սահակի պատմության» հեղինակի։ Այսպիսով՝ Բաղիշեցու օրոք գոյություն չի ունեցել ոչ մի մատենագիտական ցանկ կարծեցյալ «Սահակի պատմության» հեղինակի մասին, և Բաղիշեցին այդ հեղինակի անունը չի իմացել։ Եվ առհասարակ բովանդակ հայ մատենագրության մեջ, բացի 1724 թ. ցանկից, ուրիշ ոչ մի տեղ բացառապես ոչ մի հիշատակություն չկա «Խոսրովի գրած Սահակի պատմության» մասին։

Հոդվածի 67-րդ էջում հոդվածագիրը կազմել է մի աղյուսակ, որի նպատակն է՝ տպավորություն ստեղծել, թե իբր երկու հայ գիտնականներ՝ Բաղիշի դպրոցի ամենանշանավոր ուսուցիչներից մեկը՝ Վարդան Բաղիշեցին և դասական հայագիտության այնպիսի մի հմուտ ներկայացուցիչ, ինչպիսին է Գա-

լուստ Տեր-Մկրտչյանը, չեն իմացել, որ ձեռագրերը նկարագրելիս պետք է նյութերը թվարկել հերթականությամբ և ոչ թե խառնել իրար և ստեղծել այն «պատահական հերթականությունը», որի մասին հոդվածագիրը գրում է. «Վարդան Բաղիշեցու ցուցակում ևս, որը ոչ թե ձեռագրացուցակ է այսօրվա իմաստով, այլ սովորական մի գույքամատյան (ցուցակն այս անգամ «գույքամատյան» կոչողը մոռացել է, որ գույքամատյանում նույնպես ձեռագրատերերն իրենց ունեցվածքը չեն նշում «պատահական հերթականությամբ»— Գ. Ա.)... գործերը թվարկված են պատահական հերթականությամբ: Ուստի չէր կարելի պատահական հանգամանքը հիմք դարձնել լուրջ եզրակացությունների» (68):

«Պատահական հերթականության տեսությունը» հոդվածագիրը կառուցել է երկու հենակետերի վրա, որոնցից մեկը Բաղիշեցու ցուցակում գտնվող մի վրիպակ է, իսկ մյուսը՝ Գ. Տեր-Մկրտչյանի ցուցակում պատահաբար հայտնված մեկ ուրիշ վրիպակ: Վրիպակներից առաջինն այն է, որ Վարդան Բաղիշեցին № 2639 ձեռագրի նյութերը նկարագրելիս վրիպակաբար նախադաս է նշել ձեռագրում կողք-կողքի գտնվող Եղիշեի գործը և «Ներսեսի պատմությունը»: Բայց մյուս բոլոր նյութերը նա նշել է խիստ ճշգրտությամբ: Գալուստ Տեր-Մկրտչյանը նույնպես վրիպակաբար նախադաս է նշել կողք-կողքի գտնվող Խորենացու գործը և «Ներսեսի պատմությունը»: Բայց մյուս բոլոր նյութերը նա նույնպես նշել է խիստ ճշգրտությամբ: Այսպիսով՝ և Բաղիշեցու, և Գալուստ Տեր-Մկրտչյանի սկզբունքը եղել է նյութերի խիստ ճշգրտությունը: Իսկ Թորոսյանը երկու գիտնականների գործերում ջոկել է միայն հիշյալ մեկական վրիպակները և նրանց հիման վրա գրել. «ինչպես տեսնում ենք, ինչքան նկարագրություն, այնքան տարբերություն գործերի հերթականության մեջ» (67):

Եթե հոդվածագիրը ծանոթ լիներ և ուշադրություն դարձներ № 2639 ձեռագրից բացի նաև Բաղիշեցու ցուցակում ներկայացված շուրջ 200 այլ նյութերի նկարագրությանը՝ կտեսներ, որ Բաղիշեցին թերթել է Բաղեշի հարուստ մատենադարանում պահված բոլոր վարդապետական գրքերը (նրանցից մի քանիսը տպագիր են) և թերթ առ թերթ զննելով՝ խստագույն ճշգրտությամբ գրանցել է իր ձեռագրական հարստությունները[83]: Եվ տարօրինակ էլ կլիներ կարծել, թե նա հարյուրավոր նյութերի ցանկը կազմել է սոսկ հիշողությամբ...

Հիշողության վրա, պատահական հերթականությամբ կազմված «գույքամատյանը» հոդվածագրին պետք է եղել, որպեսզի դրանով նա հնարավորություն ստանա ցուցակում հերթականությամբ նշված Խոսրովին անջատելու «Ներսեսի Պատմությունից» և հանձնելու «Սահակի տեսիլին»: Այժմ դա հնարավոր չէ, որովհետև Խոսրովն ու «Ներսեսի Պատմությունը» անբաժանելիորեն կապված են միմյանց հետ՝ նրանով, որ Խոսրովը, ցուցակում նշված 6-րդ

[83] Բաղեշի մատենադարանում գտնված և այժմ Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող բոլոր ձեռագրերը Բաղիշեցու ցուցակում նշված են խիստ հերթականությամբ: Վկայակոչենք մեզ արդեն ծանոթ № 3070 ձեռագիրը: Ինչպես այս ձեռագրում, այնպես էլ Բաղիշեցու ձեռագրացուցակում նյութերի հերթականությունը հետևյալն է. «Զենոբ պատմագիրք և ի հետն Ստեփաննոս Տարօնացւոյ, որ է Ասողիկն և Արիստակեսի Լաստիվերցոյն և միւս Ղեւոնդ պատմագիրք և միւս Վրաց պատմութիւն և միւս այլ Միխիթարայ Այրիվանեցւոյ պատմագիրք և միւս այլ Օրբելեանց պատմութիւն»: (Լաստիվերցու անունը տպագիր ցուցակում բաց է թողնված, մենք քաղել ենք № 737 ձեռագրի 224բ էջից):

անունն է, և «Սեբեոսի Պատմությունը» նույնպես ձեռագրում գտնվող 6-րդ պատմագիրքն է։ Ուրեմն պետք էր ստեղծել «պատահական հերթականության տեսությունը», որպեսզի կարելի լիներ Խոսրովին միացնել կամեցած պատահական բնագրին և դրանով «վերացնել» Աբգարյանի հայտնաբերած փաստը...

Գրախոսության հաջորդ՝ 69—75-րդ էջերն սկսվում են հետևյալ հայտարարությամբ. «Խոսրովին հայտնի Պատմության հետ կապելու համար պետք էին, ուրեմն, գիտական-բանասիրական լուրջ ու ծանրակշիռ փաստեր։ Բայց Գ. Աբգարյանը նման ոչ մի փաստ, բացարձակապես ոչ մի փաստ չի բերել» (69)։ Բացատրենք նաև այս հայտարարության հիմքում ընկած անտեղյակությունը։

Ինչպես տեսանք, № 2639 ձեռագրում Բաղիշեցու օրոք եղել են վեց պատմագիրք և վեցն էլ անվանապես նշված են ցուցակում՝ Ագաթանգեղոս, Խորենացի, Եղիշե, Ներսեսի պատմություն, Փարպեցի, Խոսրով։ Ուրեմն՝ ամեն ոք կհասկանա, որ ցուցակում նշված վեցերորդ անունը՝ Խոսրովը, վերաբերում է Սեբեոսին վերագրվող երկին, որովհետև ձեռագրում գտնվող՝ մնացած հինգ պատմագրքերը ցուցակում իրենց անուններն ունեն։

Այս տարրական գիտելիքը, սակայն, կպահանջեր «գիտական-բանասիրական ծանրակշիռ փաստերի» վկայակոչություն, եթե չիմանայինք, թե № 2639 ձեռագրում քանի՞ պատմագիրք կա, և՝ գրախոսողի նման՝ «Սահակի տեսիլը» նույնպես պատմագիրք համարեինք[84]։ Այս դեպքում մեկ «անհայտ պատմագիրքը» կդառնար երկու և այսպիսով կսկսվեր գրախոսողի այն բանավեճը, թե Խոսրովը «երկու անհեղինակ գործերից» որի՞ հեղինակն է։

Բանավեճը, սակայն մեկընդմիշտ կկանխվեր, եթե գրախոսողը միաժամանակ, իմանար, որ Բաղիշեցին չէր կարող «Սեբեոսի պատմության» նման մի կարևոր սկզբնաղբյուր իր ցուցակում չնշել այն պատճառով, որ նա իբր «շատ պարզ ասում է, որ չգիտի 7-րդ գործի հեղինակին, իսկ 7-րդ գործը Սեբեոսի Պատմությունն է» (68)։ Սույն «պատճառաբանությունը» մասնագետներին ներկայանում է որպես անհարմար զրույց, որովհետև գիտական հոդվածում չէր կարելի խոսք բանալ այն մասին, թե ձեռագրացուցակներում գրանցվում են միայն հայտնի հեղինակների երկերը... Պետք էր իմանալ, որ № 2639 ձեռագրում «Սեբեոսի Պատմության» հետ միասին ընդօրինակված է նաև մեկ ուրիշ երկ (Մեսրոպ Վայոցձորեցու երկը), որի հեղինակին նույնպես Բաղիշեցին «շատ պարզ ասում է, որ չգիտի», բայց սա չի խանգարել, որ նա այդ երկը ցուցակում նշի երկի գլխավոր գերակատարի՝ Ներսես Պարթևի անվամբ («Ներսես Պատմութիւն»)։ Ահա, այսպես էլ՝ նա Խոսրովի անվամբ նշել է Խոսրով Ապրվեղի պատմությունը։

Մինչև այժմ մենք դիտմամբ չէինք հիշատակում «Սահակի տեսիլի» հանրահայտ հեղինակի անունը, որպեսզի ցույց տայինք, որ Խոսրովի կապակցությամբ հոդվածագրի սկսած վեճն ավելորդ էր նույնիսկ այն դեպքում, եթե Տեսիլի հեղինակը իսկապես հայտնի չլիներ։ Թոփուզյանը Տեսիլի շուրջ վեճ սկսե-

84 Ինչպես տեսանք, Տեսիլը պատմագիրք դարձնելու միտումով՝ Թոփուզյանը ցուցադրել է տեսիլի միայն 4 թերթին վերաբերող «Պատմութիւն սրբոյն Սահակայ» լուսանցագրությունը։ Սակայն պետք էր իմանալ, որ՝ եթե նույնիսկ «Պատմութիւն» բառը գործածված չլիներ ոչ թե լուսանցքում, այլ՝ հենց տեսիլի վերնագրի մեջ՝ դարձյալ տեսիլը դրանով պատմագիրք չէր դառնա, քանի որ Բաղիշեցին պատմագիրք ասելով իր ցուցակում ամենուրեք նկատի է ունեցել միայն պատմագրքերը։

լով՝ տպավորություն է ստեղծել, թե դա վիճելի հարց է, և թե բանասերների ճաշակից է կախված լուծումն այն խնդրի, թե Բաղիշեցին Խասրովի անվամբ նշել է արդյոք տեսիլը, թե՞ «Սեբեոսի Պատմությունը»...

Ընթերցողը նույնիսկ երևակայել չի կարող, որ Թոփչյանի կողմից «անհեղինակ գործ» հայտարարված և Բաղիշեցու միջոցով ամենուրեք որպես Խասրովի գործ ներկայացված «Սահակի պատմությունը» այլ բան չէ, քան հայ պատմական մատենագրության ամենակարկառուն ներկայացուցիչներից մեկի՝ Ղազար Փարպեցու «Հայոց պատմությունից» քաղված՝ 11 թերթանոց մի փոքրիկ հատված...

№ 2639 ձեռագրում, Սահակի տեսիլից ընդամենը մեկ պատմագիրք (Եղիշե) հետո, ընդօրինակված է Փարպեցու «Հայոց պատմությունը», որի կազմում կա նաև՝ Սահակի տեսիլը: Այսպիսով՝ միևնույն ձեռագրում երկու անգամ ընդօրինակված է միևնույն տեսիլը, որոնցից մեկը պարունակող Պատմության վրա խոշոր տառերով գրված է Փարպեցու անունը[85]: № 2639 ձեռագիրն սկզբում ընդօրինակել է Պողոս Գավրոցին, որի օգտագործած գաղափար օրինակում գտնվել է «Սահակի տեսիլը»: Այնուհետև ձեռք է բերվել Փարպեցու ամբողջական Պատմությունը և Գրիգոր Երեցի ձեռքով ընդօրինակվել է ձեռագրի երկրորդ մասում: Ուրեմն՝ Թոփչյանը շատ ու շատ խորհրդավոր մի քայլ է արել, երբ Փարպեցու անունը կրող տեսիլը ընթերցողին ներկայացրել է որպես «անհեղինակ գործ» և սկսել է վիճել այն մասին, թե Բաղիշեցին դա համարել է Փարպեցու, թե՞ Խասրովի գործը:

Գրախոսողն ընթերցողին մատուցել է նաև այսպիսի մի նորություն: «Հնարավոր է, որ բազմաթիվ ձեռագրերում և Փարպեցու Պատմությունից առանձին հանդիպող այս գործը մասն է (կամ համառոտությունը) հինգերորդ դարում գրված այն «Սահակի պատմության», որից բառ առ բառ քաղել է Փարպեցին... Ն. Ակինյանը նույնիսկ համոզված է, որ Պատմության Ա դրվագը Փարպեցու գրչին չի պատկանում» (74—75): Բայց մի՞թե Ակինյանին այսպես պետք էր հասկանալ[86]: Եվ մի՞թե տարօրինակ չէր լինի՝ կարծել, թե Փարպեցին կարող էր «բառ առ բառ քաղել» և իր գրքի մեջ՝ որպես սեփական աշխատություն

85 № 2639 ձեռագրում առանց հեղինակի անվան ընդօրինակված Սահակի տեսիլը և Փարպեցու Պատմության կազմում գտնվող իր կրկնակն ունեն այնպիսի ընդհանրություններ, որ մասնագետ ձեռագրագետը ուշադիր ուսումնասիրելիս՝ նրանց նույնությունը կնկատի նույնիսկ առանց կարդալու. միայն արտաքին գրչական տեսքից կռահելով: Ուրեմն ավելորդ է ասել, որ Թոփչյանն ավելի քան վատ է վարվել, երբ անգրագետի դերում է ներկայացրել Բաղիշեցու նման մի հմուտ մատենագետի, այն էլ՝ այն դեպքում, երբ հենց Բաղիշեցին ինքն է իր ձեռքով երկու տեսիլն էլ հայթայթել և ընդօրինակել տվել № 2639 ձեռագրի կազմում: Ասենք նաև, որ № 2639 ձեռագիրը ավելի քան 30 տարի (1672—1704) գտնվել է Բաղիշեցու ձեռքին և ծառայել է որպես դասագիրք: Ուստի՝ ոչ միայն Բաղիշեցին, այլև նրա աշակերտները 30 տարվա ընթացքում ամեն անգամ Սահակի տեսիլը կարդալիս կարդացել են նաև Փարպեցու անունը:

86 Փարպեցուց քաղված տեսիլը մեծ մասամբ ընդօրինակված է լինում առանց հեղինակի անվան, իսկ այն դեպքերում, երբ հեղինակի անունը կա՝ դա լինում է բնականաբար միայն Փարպեցու անունը: Հմմտ. Մաշտոցի Մատենադարան, ձեռ. №№ 4803, 8917, Նոր Ջուղայի ձեռ. № 24 (ընդօրինակված է հենց Բաղիշեցու ժամանակ՝ 1652 թ., էջ 32—38) և այլն: Հայտնի չէ որևէ ձեռագիր, որի մեջ Սահակի տեսիլը, թեկուզև սխալմամբ, ընդօրինակված լիներ Փարպեցու անունից բացի մեկ այլ անվամբ: Ինչ վերաբերում է Ակինյանին՝ նա հնարավոր չի համարել, որ Ա դրվագը գրված լինի հինգերորդ դարում: Հետևաբար՝ նրա իսկ ենթադրությամբ հերքվում է կապը դրվագի և Խասրով Թարգմանչի ապրած ժամանակի միջև:

ներկայացնել հենց միևնույն օրերին ապրած մեկ ուրիշ մատենագրի գրած մի ամբողջ գրվածք...[87]։

Տեսնելով, որ հայտարարությունների միջոցով անհնարին է ստեղծել ոչ մի տեղ գոյություն չունեցող «Խոսրովի Սահակի պատմությունը»՝ Թորոսյանը «գրախոսականի» 71—72 էջերում Ալիշանից քաղել է զանազան տեղեկություններ և հայտարարել. «Ինչպես տեսնում ենք, մեծ հայագետը, հիմնավորապես փաստարկել է այն իրողությունը, որ Խոսրովը Պատմութիւն Սահակայ գործի հեղինակն է» (72)։ Սա վերացական հայտարարություն է։ Իրականում մեծ հայագետը ոչ միայն «հիմնավորապես» չի փաստարկել, այլև չի բերել Խոսրովի անունը կարծեցյալ «Սահակի պատմության» վրա հաստատող բացառապես ոչ մի վկայություն մեր հին, դասական մատենագիրներից։

Մենք հենց այժմ մեկ առ մեկ կանդրադառնանք Ղ. Ալիշանի փաստարկներին, իսկ մինչև այդ հայտնենք, որ փաստարկներից ամենածանրակշիռը մեզ թվացել է Մխիթար Այրիվանեցու վկայությունը, ուստի մենք մեր ուսումնասիրության մեջ անդրադարձել ենք միայն նրան։ Բայց, տեսեք, թե ինչ դիտավորություն է «տեսել» գրախոսը՝ մյուս հինգ փաստարկներին չանդրադառնալու մեր որոշման մեջ։ «Հայապատում մեծարժեք աշխատության մեջ,— գրում է նա,—Ղ. Ալիշանը խոսում է Խոսրովի մասին երկու անգամ՝ էջ 50—51 և 64... Գ. Աբգարյանը կառչում է Ղ. Ալիշանի այս երկրորդ խոսքից... Գ. Աբգարյանը պետք է անպայման հերքեր Ղ. Ալիշանի բերած փաստերը։ Բայց որովհետև Գ. Աբգարյանը չի կարողացել, ասենք նաև, որ չէր էլ կարող անել այդ՝ նա անտեսել է այդ փաստերը» (71—72)։

Արդ՝ տեսնենք, որոնք են այդ հինգ փաստերը։

Առաջին. «Յայսմաւուրք... ընդ գլխաւոր և երևելի թարգմանիչս յիշեն զԽոսրով»։ Այստեղ «Սահակի պատմության» վերաբերյալ ոչինչ չկա։ Ուրեմն առաջին փաստարկն ինքնաբերաբար հերքվում է։

Երկրորդ. «Ի շարս պատմչաց յիշեն (զԽոսրով—Գ. Ա.) Կիրակոս և Մխիթար Այրիվանեցի»։ Բայց ո՛չ Կիրակոսը, ո՛չ էլ Այրիվանեցին ոչ մի բառ չունեն ո՛չ «Սահակի պատմության», ո՛չ էլ նրա հեղինակի մասին։ Այսպիսով հերքվում է նաև երկրորդ փաստարկը։

Երրորդ. «Հայրն Ահարոն յԹ դարու յիշէ զայդ»։ Հայր Ահարոնը նույնպես բացառապես ոչինչ չի ասել Խոսրովի մասին։ Նա հիշատակում է չորս աղբյուր. «յԱգաթանգեղ պատմագրէ և ի Վկայութենէն Շուշանկանն, ի Վարուց սրբոյն Սահակայ և ի Ճգնաւորէն Անդրէասայ» (73)։ Խոսրով Թարգմանիչի անվան բացակայությունը պարզ ցույց է տալիս, որ 9-րդ դարում որևէ Խոսրով պատմիչի գոյության մասին Հայր Ահարոնը չի իմացել։ Հետևաբար՝ հերքվում է նաև երրորդ փաստարկը։

Չորրորդ. «Նաև յետին դարուց Նոր Ջուղայի ձեռագրաց ցանկի մի մէջ յայտնապէս գրուած է «Խոսրովայ Թարգմանչի Պատմութիւն Սրբոյն Սահակայ»։ Սա 1724 թ. կազմված ցանկն է, որի տեղեկությունը դժվար է հավատալ,

87 Մատենագետներին քաջ հայտնի է, որ հենց Փարպեցու առաջին գրվածքում է գտնվում այդ հեղինակին պատկանող այն նշանավոր արտահայտությունը («ըստ գրելոցն ի Պատմութեան երկրորդումն, ի ճառին հնգետասաներորդի»), որի հիման վրա բանասերները բազմիցս քննել են Փավստոս Բուզանդի դպրությունների հարցը։ Եթե Թորոսյանն այս փաստին ծանոթ լիներ, Փարպեցու գրածը չէր հանձնի Խոսրովին։

որովհետև՝ այդ տեղեկության և Խոսրով Թարգմանչի միջև ընկած է շուրջ 1200 տարի ընդգրկող մի այնպիսի ժամանակամիջոց, որի ընթացքում ոչ որ բացառապես ոչ մի խոսք չի ասել Խոսրովի գրած ահռասարակ որևէ գրքի մասին: Անհնարին է, որ երբևէ գոյություն ունենար Սահակ Պարթևի նման մի նշանավոր կաթողիկոսի պատմությունը և նրա հեղինակի անունը չիմանար ու չնշեր ոչ մի հայ պատմիչ, սկսած 5-րդ դարից մինչև 1724 թվականը:

Հինգերորդ: «Եւ Յակոբ Այուբեանց այսպես կը գրէ. «Խոսրով Թարգմանիչ, որ է Պատմութիւն սրբոյն Սահակայ Հայրապետին»: Սա նույնպես 1724 թվականի ցանկն է, որի մասին արդեն խոսվեց…

Ընթերցողի համակրանքը շահելու նպատակով Թոռոսյանը մեծանուն Ալիշանին հայտարարում է Գ. Աբգարյանի կողմից «քննադատվող գիտնական»: Նա գրում է «Գ. Աբգարյանը ձգտում է, ինչ գնով էլ լինի, ցույց տալ, որ Խոսրովը կապ չունի Սահակի պատմության հետ, որպեսզի նրան կարողանա կապել Սեբեոսի Պատմությանը, անտեսելով այն փաստերը, որ բերում է իր կողմից քննադատվող գիտնականը» (72): Ընդամենը մեկ նախադասության մեջ նա կարողացել է զետեղել երեք աններելի սխալներ: Առաջին. «Գ. Աբգարյանը ձգտում է, ինչ գնով էլ լինի, ցույց տալ, որ Խոսրովը կապ չունի Սահակի պատմության հետ, որպեսզի նրան կարողանա կապել Սեբեոսի պատմությանը»: Սա սխալ է, որովհետև ոչ թե Աբգարյանի ձգտումով, այլ՝ բովանդակ հայագիտության և 1500-ամյա հայ մատենագրության գոյությամբ հաստատված է, որ «Խոսրովը կապ չունի Սահակի պատմության հետ»: Ինչպես ասվեց, № 2639 ձեռագրում գտնվող չակերտավոր «Սահակի պատմությունը» ոչ թե Խոսրովինն է, այլ՝ Ղազար Փարպեցու «Հայոց պատմության» մի հատվածը:

Երկրորդ սխալն այն է, թե մենք դիտավորյալ կերպով անտեսել ենք մեր կողմից «քննադատվող գիտնականի» հիշյալ հինգ փաստերը: Տեսանք, որ դրանք անտեսելու համար մենք որևէ պատճառ չենք ունեցել:

Երրորդ սխալն էլ հենց այն է, թե մենք իբր քննադատել ենք այնպիսի մի մեծության, որի անունն ամեն անգամ ինքներս հիշում ենք սրբազան երկյուղածությամբ: Եթե Ալիշանի որևէ փաստարկ մեզ չի համոզել՝ դա դեռ չի նշանակում, թե մենք քննադատել ենք հայ բանասիրության մշանջենական նահապետներից մեկին…

Թոռոսյանի հոդվածի 70-րդ էջում զետեղված է մի երկրորդ աղյուսակ, որի նպատակն է «հերքել» մեզ և ցույց տալ, որ տարբեր մատենագիտական ցանկերում հայ պատմիչների անունները նշված են լինում տարբեր հերթականությամբ: Նույն աղյուսակը կազմված է կարծես թե հենց մեր պատվերով, ապացուցելու համար, որ նույնիսկ տարբեր հերթականության դեպքում՝ աղյուսակում ներկայացված բոլոր աղբյուրների հեղինակները Խոսրովին նշել են անմիջապես Ղևոնդից առաջ՝ («Խոսրով, Ղևոնդ»)[88]: Սա մեր տեսակետը հաստատող լավագույն ապացույց է, և մեզ մնում է շնորհակալություն հայտնել հոդվածագրին՝ աղյուսակը կազմելու համար…

Բայց շնորհակալության զգացումը մեզ երկար չի ուղեկցում, որովհետև

---

88 Բացառում ենք Մխ. Այրիվանեցու ցանկը, որը գիտական քննության նյութ չի կարող հանդիսանալ և աղյուսակում չպետք է բերվեր, որովհետև խանգարված է (Փարպեցին միևնույն ցանկում նշված է երկու անգամ, 10-րդ դարի պատմիչ Արծրունին նշված է 5-րդ դարի պատմիչ Խորենացուց առաջ և այլն):

Հոդվածագիրը դարձյալ իր հին սովորությունը մտաբերելով՝ գրում է. «Գ. Աբգարյանը Բաղիշեցու ցուցակի մեջ հետաքրքրող մասը հայտարարում է նորահայտ տեղեկություն, այսինքն՝ նոր միայն իր կողմից հայտնաբերված տեղեկություն, այնինչ՝ այս նորահայտ տեղեկությունը ավելի քան 60 տարվա հնություն ունի։ Ցուցակի հրատարակիչն արդեն հատուկ ուշադրություն է դարձրել քննվող տեղեկության վրա» (71)։

«Գրախոսողը» պարզապես չի հասկացել ցուցակի հրատարակչին։ Վերջինս 1903 թ. «հատուկ ուշադրություն է դարձրել քննվող տեղեկության վրա» նրանով, որ կարծել է, թե Բաղիշեցու ցուցակի Խոսրովը՝ 1724 թ. կազմված «Պատմագիրք հայոցում» նշված Խոսրովն է։ Բայց մենք մեր գրքում հենց այն ենք արել, որ ցույց ենք տվել, որ № 2639 ձեռագրում չկա ոչ մի Խոսրովի «Սահակի պատմություն»։ Այլ կերպ՝ ցուցակի հրատարակիչը № 2639 ձեռագիրը տեսած չլինելով՝ թյուրիմացության մեջ է ընկել, իսկ մենք այդ ձեռագրի հիման վրա վերացրել ենք թյուրիմացությունը։ Երկու հակառակ բևեռներում գտնվող այս գործողությունները չտարբերելը տարօրինակ է մանավանդ այն պատճառով, որ մենք մեր գրքի 23—24 էջերում շատ հասկանալի բառերով բացատրել ենք ցուցակի հրատարակչի սխալը, գրելով՝ «նա (ցուցակի հրատարակիչը) կարծել է, թե... Խոսրովի գործը՝ Խոսրով Թարգմանչի Պատմութիւն սրբոյն Սահակայ երկը պետք է լինի»։

72-րդ էջի տողատակային ծանոթագրության մեջ հոդվածագիրը հայտնում է, որ ինքը Խոսրով Թարգմանչի մասին գրել է «մի առանձին ուսումնասիրություն, որը տպագրվել է «Բանբեր Երևանի համալսարանի» հանդեսի № 2-ում»։ Այդ «առանձին ուսումնասիրությունը» արդեն իր արժանի պատասխանն ստացել է Մատենադարանի գիտաշխատակից Փ. Անթաբյանի հանգամանալի վերլուծության մեջ[89]։ Անթաբյանը էջ առ էջ քննել է Թորոսյանի «առանձին ուսումնասիրությունը» և ցույց է տվել, թե ինչ միջոցներ է կիրառել նա իր նպատակին հասնելու համար։ «Խ. Թորոսյանի հոդվածի 8 կետերից բաղկացած եզրակացությունները բոլորն էլ... զուրկ են իրական փաստական հիմքից»[90]։ Ուրեմն 8 եզրակացություններից գոնե մեկը փաստական հիմք չունի։ Այլ կերպ էլ լինել չէր կարող։ Միայն 18-րդ դարի մատենագիտական մի ցանկում նշված և հայ մատենագրության մեջ ուրիշ ոչ մի տեղ չհիշատակված՝ Խոսրովի «Սահակի պատմությունը» իրական գրքի տեղ մատուցելու ջանքերը բնականաբար պետք է զուրկ լինեին իրական փաստական հիմքից։

Անթաբյանը Թորոսյանի հոդվածը քննելիս միաժամանակ նկատել է, որ «հոդվածագիրն իր եզրակացությունները հիմնում է բացառապես տարբեր բանասերների վաղուց արդեն հայտնի զանազան ենթադրությունների ու տպագիր աղբյուրների վրա, չի նշում ոչ մի ձեռագրական կամ բնագրական տվյալ, որը նոր լիներ և փաստական որևէ կշիռ ներկայացներ այս հարցում»[91]։ Ընդհանուր եզրակացությունն այն է, որ «Սահակայ վարքի մասին ինչ եղել է բանասիրության մեջ Խ. Թորոսյանի սույն հոդվածից առաջ, մնում է անփոփոխ»[92]...

89 Անթաբյան Փ. Փ., Սահակ Պարթևի «Վարքի» և նրա հեղինակի մասին.— «Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 2, էջ 129—146։

90 Նույն տեղում, էջ 143։

91 Նույն տեղում, էջ 130։

92 Նույն տեղում, էջ 146։

Թորոսյանի դրախոսականի հաջորդ՝ 76—87-րդ էջերում «բանավիճված» նյութի վերնագիրն է «Սեբեոսի Պատմության վերնագիրը և բովանդակությունը»։ Այստեղ զարգացվում է այն ինքնատիպ դրույթը, թե պարտադիր չէ, որ գրքերի վերնագրերը համապատասխանեն նրանց բովանդակությանը։ Թորոսյանի կարծիքով՝ գիրքը կարող է ունենալ նաև այնպիսի վերնագիր, որը չհամապատասխանի ամբողջ գրքի նույնիսկ մեկ գլխին։

Այդպիսին է, օրինակ, ըստ Թորոսյանի, Ագաթիասի գրվածքը, որ կոչված է «Պատմություն Հուստինիանոսի»։ «Այս գրքում,— գրում է Թորոսյանը,— գոնե մի գլուխ էլ չի նվիրված Հուստինիանոսին... Ագաթիասի Պատմությունը, այսպիսով, շատ ցայտուն օրինակ է՝ գրքի վերնագրի և բովանդակության հակասության» (78)։ Թորոսյանին պարզապես հայտնի չի եղել, որ մանրագիտությամբ իրավաբան Ագաթիասի գիրքը կիսատ է մնացել, որի հետևանքով՝ ծրագրված խորագիրն այժմ չի համապատասխանում անավարտ գրքի բովանդակությանը։

Հոդվածագիրը «հակասություն» է տեսել նաև Ուխտանեսի դեպքում։ Այս անգամ նա կարիք ունի հետևյալ բացատրության։ Ուխտանեսի գրքի առաջին մասը կրկնություն է նախորդների գրածի, վերջին մասը կորել է, մնացել է միջին մասը։ Ուստի բնական է, որ գիրքը պետք է բնութագրվեր ըստ միջին մասի բովանդակության։ Հետևաբար՝ եթե միջնադարյան պատմիչները Ուխտանեսի գիրքը բնութագրել են ըստ այդ մասի բովանդակության («Բաժանումն վրաց ի Հայոց»), դա չի նշանակում, թե նրանք հակասական տեղեկություն են հայտնել Ուխտանեսի վերաբերյալ։

Կարծելով, թե վերնագրի և բովանդակության անհամապատասխանության փաստը այնքան էլ որոշիչ չէ, Թորոսյանը գրում է. «Շատ չեն Գ. Աբգարյանի փաստարկները... Դրանցից հիմնական ու ամենազորավորն այն է, որ Սեբեոսի Պատմության վերնագիրը—Պատմութիւն ի Հերակլն—չի համապատասխանում ներկա Պատմության բովանդակությանը» (70)...

Անշուշտ, մենք չենք կարծում, թե Հերակլի պատմությունը եղել է մի «թորած» պատմություն՝ զուտ Հերակլի մասին։ Շատ բնական է, որ Սեբեոսի գիրքը պարունակեր բազմաթիվ այլ տեղեկություններ, ինչպես որ «Խոսրովի մատյանը» պարունակում է ամենաբազմազան տեղեկություններ։ Բայց կասկածից վեր է, որ Հերակլին նվիրված մի Պատմության գլխավոր գերակատարը պետք է լիներ Հերակլը։ Բացի դրանից՝ հեղինակն ինքը պետք է հայտներ, որ գրել է Հերակլի պատմությունը։ Այնինչ՝ այժմ Սեբեոսին վերագրվող երկի գլխավոր գերակատարը Հերակլը չէ և հեղինակն էլ գրում է, որ ինքն իր գիրքը նվիրել է Խոսրովին։

Հակասությունը «Հերակլի Պատմության» և ներկա «Խոսրովի Պատմության» միջև այնքան ակնհայտ է, որ Թ. Միհրդատյանը, որն առաջին անգամ էր հրատարակում «Սեբեոսի Պատմությունը» և դեռ չէր ընտելացել Շահխաթունյանի հիմնադրած ավանդույթին, նույնիսկ կարծել է, թե գիրքը Հերակլի անվամբ է կոչվել, որովհետև Հերակլ կայսրն անձամբ հանդիպել է Սեբեոսին և խնդրել է գրել այս գիրքը։ «Արդարև մնամք ի տարակոյս. կամ ի Միջագետս հանդիպեալ Հերակլի կայսեր՝ թուի լինել ըստ խնդրանաց նորին գրեալ (ընդգծումները մերն են—Գ. Ա.) զայն պատմութիւն և կամ սակս ընդարձակագոյնս գրելոյ զպատմութիւն Հերակլի՝ նորին վասն ընծայէ նմա զանուն Պատ-

մութեանս։ Նմին իրի կամ ընկալեալ է յայլոց և կամ ինքն եդեալ է զայս անուն Պատմութեանս»[93]։

Առաջին հրատարակության հաջորդ տարին Հ. Գաթրճյանը գրել է. «Որչափ որ ստույգ են նե, այնչափ ալ զարմանալի է, որ Սեբեոսյան Պատմության անունը միայն Պատմութիւն ի Հերակլ կամ Հերակլ ի Սեբէոսէ կավի... Անիկա (Հերակլը—Գ. Ա.) նույն գրքին մինակ մեկ պզտիկ մասը կրնե»[94]։

Ն. Ակինյանն ասում է. «Պատմութիւն Հերակլի անվանակոչությունը.. յուր արդար մեկնությունը չի գտներ»[95]։ Իսկ Ստ. Մալխասյանցը՝ տեսնելով, որ վերնագրի և բովանդակության հակասությունը հաշտեցնող բացատրությունները գործնական նշանակություն չունեն և նրանցից հետո էլ հակասությունը շարունակում է մնալ, «Սեբեոսի Պատմությունը» հրատարակել է առանց Հերակլի անվան։

Թորոսյանը, սակայն, գտնում է, որ հակասությունը շատ բնական երևույթ է. ավելին՝ դա «վկայում է հեղինակի ստեղծագործական թռիչքի մասին» (78)։ «Հեղինակը ծայրահեղ խստությամբ ինքն իրեն կաշկանդելու» մտադրություն չի ունեցել և շեղվել է «վերնագրում նշված կետից աջ ու ձախ»։ Այս աջ ու ձախ շեղումները եղել են «հենց թեկուզ այն պատճառով, որ նախապատրաստվեր Հերակլի մուտքը Պատմության մեջ»։ Ստացվում է այնպես, որ հեղինակն իր գրքի մեծ մասը թերել է աջ ու ձախ և նախապատրաստել է Հերակլի մուտքը, իսկ մուտքի մեջ թողել է Հերակլին վերաբերող «մինակ մեկ պզտիկ մասը»։ Եվ սա «վկայում է հեղինակի ստեղծագործական թռիչքի մասին»...

Սրա հետ միասին հոդվածագիրը կրկնել է այն միտքը, թե «վերնագիրը գրքին կարող էին տված լինել հետագա մատենագիրները»։ Նրա կարծիքով՝ հետագա մատենագիրները պետք է ընտրեին գրքին չհամապատասխանող վերնագիր... Դրանում համոզված՝ նա գրում է. «Ուրեմն բավական է թեկուզ այս ենթադրությունը և Գ. Աբգարյանի ամբողջ կառույցը փլվում է, որովհետև, այդ դեպքում վերանում է վերնագրի և բովանդակության կարծեցյալ հակասությունը» (80)...

Տեսնենք, թե Գ. Աբգարյանի ուրիշ էլ ի՞նչ կառույցներ են փլվել Թորոսյանի գրախոսականում։ Ինչպես արդեն գիտենք, Պարսից Խոսրով արքայի մուտքը Սեբեոսին վերագրված երկում նշանավորված է գրեթե չափածո մի նախերգանքով։ Մինչ՝ Հերակլը երևան է գալիս շատ սովորական մի ձևով։ Այս փաստը նույնպես մենք դիտել ենք որպես նշան այն բանի, որ հեղինակն իր գրքի տվյալ մասը նվիրել է ոչ թե Հերակլին, այլ՝ Խոսրովին։ Թորոսյանը գտնում է, որ մեր մատնանշած փաստը «շատ մանր ու խախուտ հիմք է... որպեսզի հնարավոր լինի կառուցել դրա վրա այնպիսի մի ծանր շենք, ինչպիսին երկի հեղինակի հարցն է» (76)։ Նա քանդում է «մանր ու խախուտ» հիմքի վրա կառուցված մեր շենքը, որովհետև համոզված է, որ Հերակլը նույնպես քննարկվող երկում ունի իր սեփական մուտքը։ «Ճիշտ է, այդ մուտքը այնպես ճոխ չէ, ինչպես Խոսրովինը, բայց դա արդեն ուրիշ հարց է»,—գրում է նա, բայց ընթերցողը մինչև վերջ էլ չի իմանում մեր ընդգծած խորհրդավոր արտահայտության իմաստը և չի հասկանում, թե ինչու «դա արդեն ուրիշ հարց է»։ Ինչո՞ւ «գիրքը նվիրված է Հերակլին», բայց գրքի գլխավոր չքամուտքը հատկացված է Խոս-

93 Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն ի Հերակլն, Կ. Պոլիս, 1861, էջ ԺԱ։

94 «Եւրոպա», Կ. Պոլիս, 1852, № 21, մայիսի 24, էջ 83։

95 Ակինյան Ն., Մատենագրական հետազոտ., Հ. Ա, Վիեննա, 1924, էջ 47։

րովին։ Ինչո՞ւ հեղինակը հայտնում է, թե ինքը գրելու է Խոսրովի պատմությունը, բայց «գրել է» Հերակլի պատմությունը...

Իսկ ո՞րն է Հերկլի այն «մուտքը», որը գրախոսողը ներկայացրել է որպես «յուրովի և որոշակի» մուտք, որի մեջ գրքի հեղինակը իբր «շատ ցայտուն ձևով հայտարարում է, որ սկսում է պատմել Հերակլի մասին»։ Ահա այդ մուտքը. «Խոսրով ԻԲ, Երակղոս զառաջինն»... Ինչպես տեսնում ենք, գրախոսողը «մուտքի» տեղ է դրել համաժամանակյան (սինքրոնիկ) մի նշում, որի հեղինակը (կամ՝ ձեռագիրն ընդօրինակող գրիչը, ինչպես գտնում է Ակինյանը) այլ բան չի արել, քան Խոսրովի թագավորության 22-րդ տարին համադրել է Հերակլի առաջին տարվա հետ. «Խոսրով՝ 22, Հերակլ՝ 1»։ Սա ոչ միայն «մուտք» չէ, այլև լավագույն ապացույցն է մեր այն տեսակետի, որ Սեբեոսին վերագրվող երկը շարադրված է սկզբից մինչև վերջ որպես հենց Խոսրովի պատմություն։ Նույնիսկ «Հերակլի մուտքի» մեջ առաջնությունը հատկացված է Խոսրովին և Հերակլի գահակալության տարեթիվը նշված է Խոսրովի 22-րդ տարվա միջոցով։

«Հերակլի մուտքից» բացի Թորոսյանն ընթերցողին մատուցել է նաև մի «կորուսյալ գլուխ»։ Նրա կարծիքով՝ «Սեբեոսի Պատմությունից» պոկվել և անհետ կորել է «այն էջը (կամ էջերը, հավանաբար առանձին գլուխ կազմող), որտեղ պատմվել է Սմբատի մյուս պատերազմների մասին» (81)։ Այս «կորած» էջերից իբրև Դրասխանակերտցին քաղել է «բազում մարտս... վանեալ վտանգեալ» արտահայտությունը։ Եթե գրախոսողը լավ կարդար «Սեբեոսի պատմության» չկորած էջերը՝ այլևս «կորած» էջեր ենթադրելու կարիքը չէր զգացվի, որովհետև Դրասխանակերտցին իր տեղեկությունը քաղել է չկորած էջերից։

Համեմատենք «Սեբեոսի Պատմության» և Դրասխանակերտցու համապատասխան տողերը.

| «Սեբեոս» (61) | Դրասխանակերտցի (69) |
|---|---|
| Եւ եղև... | |
| հաճոյանալ | Սմբատ քաջ Բագրատունի |
| Սմբատայ Բագրատունւոյ | Բազում և անհնարին մարտս |
| յաչս Խոսրովու արքային. | յարդարէր ընդդէմ բոլոր |
| տալ ի նա զմարզպանութիւն | թշնամեաց նորա և վանեալ |
| երկրին Վրկանայ... | վտանգեալ զբնաւ հակառակորդս |
| էին ապստամբ... յարքայէն | նորա յառին նմա կացուցանէր։ |
| Պարսից երկիրքն... Ամաղ, | Ընդ որս զարմացեալ Խոսրովայ |
| Ռոյեան, | յաւէտ իմն հաճոյանայր Սմբատ- |
| Զրէճան և Տապարաստան, զորս | յաչս նորա... տալ նմա |
| վանեալ նորա պատերազմաւ... | և զմարզպանութիւն Վրկանայ։ |
| ի ծառայութիւն արքային | Իսկ |
| կացուցանէր... | Սմբատայ... գտանէ անդ ազգս |
| Կային յաշխարհին յայնմիկ | գերեալս ի Հայաստանեայցս... |
| ազգն գերեալք ի Հայաստան | ...զլեզու իւրեանց մոռացեալ |
| երկրէ... զլեզու իւրեանց մոռա- | և զդրութիւնն նուազեալ... |
| ցան և զդրութիւն նուազեալք... | |

Այս համադրության մեջ մեզ հետաքրքրողը, ինչպես ասվեց, Դրասխանակերտցու «բազում... մարտս... վանեալ վտանգեալ» արտահայտությունն է, որը

*Թոռոսյանը 80-րդ էջում համադրել է Ուխտանեսի «բազում պատերազմունս վանեալ և վատնեալ» արտահայտության հետ և կարծել է, թե երկուսն էլ քաղված են «Սեբեոսի կորած հատվածից»։ Մենք Դրասխանակերտցու արտահայտությունը ներկայացրինք «Սեբեոսի պատմության» մեջ իրեն համապատասխանող ավելի ընդարձակ մի միջավայրում, որպեսզի արտահայտությանը նախորդող և հաջորդող տողերի միջոցով ցույց տանք այն սահմանները, որոնք ընդգրկված են Դրասխանակերտցու գրքի մեջ։ Առանց այդ սահմանների, միայն Ուխտանեսի բառերի հետ համեմատելով՝ Թոռոսյանը տպավորություն է ստեղծել, թե Դրասխանակերտցին և Ուխտանեսը գրեթե բառացի կրկնում են միմյանց։ Եվ քանի որ նրանց «կրկնածը» Թոռոսյանի ներկայացրած ձևով իսկապես գոյություն չունի «Սեբեոսի Պատմության» մեջ՝ ուստի ընթերցողը կարծում է, թե այդ Պատմությունից իրոք «կորել է նաև այն էջը... որտեղ պատմվել է Սմբատի մյուս պատերազմների մասին»։*

*Մեր համեմատությունը ցույց տվեց, որ Դրասխանակերտցին Սմբատի վերաբերյալ «բազում մարտս» արտահայտությունը գործածել է նկատի ունենալով հիշյալ չորս երկրներում (Ամաղ, Ռոյիան, Ջրէճան և Տապարստան) մղված պատերազմները։ Երկրների անունները առանձին-առանձին թվարկելու փոխարեն նա բավարարվել է «բազում մարտս» արտահայտությամբ, որից հետո բառացի կրկնել է «Սեբեոսի Պատմության» մեջ իր կարդացած «վանեալ» և «կացուցանէր» բառերը։ Իսկ Խոսրովի մարզպանության և Վրկանում գտնված հայ գաղթական-գերիների վերաբերյալ տեղեկությունները նա քաղել է գրեթե ամբողջությամբ տառացիորեն արտագրելով «Սեբեոսի Պատմությունը»։*

*Ինչ վերաբերում է Ուխտանեսին՝ նրա գործած «բազում պատերազմունս վանեալ և վատնեալ» արտահայտությունը սովորական մի արտահայտություն է։ Ճիշտ է, Դրասխանակերտցին էլ է գործածել գրեթե միևնույն արտահայտությունը, բայց եթե Թոռոսյանը ճիշտ ներկայացներ նրա և Ուխտանեսի խոսքերը՝ ընթերցողը կնկատեր, որ Դրասխանակերտցու «վանեալ» բառը որոշիչն է Խոսրովի կապակցությամբ գործածված «զբնաւ հակառակորդս նորա» արտահայտության (և վերաբերում է «հակառակորդ» բառին), իսկ Ուխտանեսն այդ բառը գործածել է Սմբատի կապակցությամբ և նկատի է ունեցել «պատերազմ» բառը։ Սա միաժամանակ նշանակում է, որ ըստ Դրասխանակերտցու՝ Սմբատը նվաճում և Խոսրովի «տակն է կացուցանում» («յատակն նմա կացուցանէր») հիշյալ չորս երկրները, իսկ ըստ Ուխտանեսի՝ Սմբատը պատերազմներ է վարում «ի Հայս, ի Յոյնս և ի Պարսիկս»...*

*Գրախոսողն ընթերցողին ներկայացրել է նաև մի երկրորդ ենթադրություն. «Կարելի է անել մի ենթադրություն ևս՝ այն, որ և՛ Դրասխանակերտցին, և՛ Ուխտանեսը Սմբատի մղած այս պատերազմների մասին տեղեկությունը քաղել են մի երրորդ աղբյուրից (81)։ Այս ենթադրությամբ նա չի նկատել, որ սեփական ձեռքերով ջուրն է լցրել իր բոլոր նախորդ ջանքերը։ Եթե մինչև այժմ նա գտնում էր, որ Դրասխանակերտցին և Ուխտանեսն օգտվել են ներկա «Սեբեոսից», այժմ նա ենթադրում է, որ այդ պատմիչներն օգտվել են «մի երրորդ աղբյուրից»։ Իսկ սա իր հերթին նշանակում է, որ գրախոսողն այս անգամ հրաժարվել է Սեբեոսի հեղինակային իրավունքը հաստատելու նպատակով իր որոնած փաստերից։*

*Մեզ անպայման հերքած լինելու փափագը գրախոսողին կանգնեցրել է նաև երրորդ հակասության առջև։ «Բառերի ու դարձվածքների այս նմանու-*

թյունը թեև հիմք է տալիս, բայց մենք չենք ուզում ենթադրել (ուրեմն՝ փաստը
հիմք տալիս է, բայց նա չի ուզում ենթադրել։ Եվ չի էլ հայտնում, թե ինչու—
Գ. Ա.), թե Ուխտանեսը... տեղեկությունը քաղել է Դրասխանակերտցուց
(81)...

Եվ այսպես. միևնույն փաստի կապակցությամբ նա արել է երեք տարբեր
ենթադրություն և ընկել է բոլորովին հակասական մեկնությունների մեջ։

Ճանապարհին նա հանդիպել է նաև փաստերը կերպարանափոխելու այլ
միջոցների։ Այսպես օրինակ, մենք վկայակոչել ենք Սամվել Անեցու «սուտ
պատմագիրն» արտահայտությունը որպես ապացույց այն բանի, որ Անեցին
իր օգտագործած աղբյուրի անունը չիմանալով՝ հարկադրված է եղել գործածել
այդ վերացական արտահայտությունը։ Թորոսյանը խոստանում է «վկայակոչել
մեր համարյա բոլոր պատմիչներին» և ապացուցել, որ նրանք բոլորն էլ գոր-
ծածել են հիշյալ արտահայտությունը, բայց դա «բնավ չի նշանակում, թե
նրանք չգիտեն այն գործի անունն ու հեղինակին, որից քաղում են» (84)։

Եթե այս համարձակ հայտարարությունն անելու փոխարեն՝ նա խնդրեր
կարդար «մեր համարյա բոլոր պատմիչների» երկերը՝ կտեսներ, որ Սամվել
Անեցին նրանցից տարբերվում է հենց նրանով, որ իր գրքում երբեք չի հիշա-
տակել այն պատմիչի անունը, որի կապակցությամբ գործածել է «սուտ պատ-
մագիրն» արտահայտությունը։ Այնինչ՝ գրախոսողն իր հոդվածի 83—84-րդ
էջերը լցրել է Ուխտանեսից քաղած բազմաթիվ արտահայտություններով, ո-
րոնք վերաբերում են այնպիսի հայտնի պատմիչների, որոնց բոլորի անուննե-
րը հիշատակված են Ուխտանեսի գրքում[96]։ Այսպիսով՝ Ուխտանեսին վկայա-
կոչողը չի կարողացել զանազանել միևնույն արտահայտության պաշտոնները
երկու տարբեր մատենագրական հուշարձաններում և չի իմացել, որ Սամվել
Անեցուն պետք էր խոսեցնել Անեցու և ո՛չ Ուխտանեսի լեզվով...

Քննարկվող արտահայտությունը վերաբերում է Դվինի առմանը։ Անեցին
ինչ որ անհայտ պատմիչից քաղել է 12.000 սպանվածների մասին մի տեղե-
կություն. «սուտ պատմագիրն» արտահայտությունը մենք վկայակոչել ենք հենց
այդ անհայտ աղբյուրը ցույց տալու նպատակով։ Իսկ Թորոսյանը կարծել է,
թե մենք այդ արտահայտությամբ հայտնել ենք, թե «Դվինի առման մասին
տեղեկությունը Անեցին քաղել է Դրասխանակերտցուց» (86)։

Մենք շատ որոշակի գրել ենք. «Պատմագիր ասելով՝ Անեցին կարող էր
հասկանալ նաև Դրասխանակերտցուն... սակայն վերջինիս մոտ չկա 12.000
զոհերի մասին տեղեկություն»[97]։ Թորոսյանը թաքցրել է այս նախադասության
ժխտական իմաստն արտահայտող ամբողջ մասը (սկսած «սակայն» բառից) և
ընթերցողին ներկայացրել է միայն նրա առաջին մասը. «Պատմագիր ասելով
Անեցին կարող էր հասկանալ նաև Դրասխանակերտցուն» (86)։ Իր հնարած
այս «փաստին» հավատալով, նա ոգևորված հայտարարում է. «Թող զարմանալի
չթվա, եթե ասենք, որ ինքը՝ Գ. Աբգարյանը չի հավատում իր գրածին», «Տա-

---

96 Ուխտանեսը «Կայսերաց գրքի» հեղինակի անունը չիմանալով գրել է. «որպէս ասացանէ պատմագիրն» (Ուխտանես, հ. Ա, էջ 82)։ Սամվել Անեցու արտահայտությունը կարելի էր համեմատել, ահա, այս արտահայտության հետ։

Մենք սույն հոդվածի առաջին մասում արդեն ցույց ենք տվել, որ Սամվել Անեցին «Սեբեոսից» չի օգտվել, ուրեմն նրա աղբյուրը մնում է անհայտ և այդ աղբյուրին է վերաբերում «սուտ պատմագիրն» արտահայտությունը։

97 Աբգարյան, էջ 180, ծ. 13։

բօրինակն այստեղ այն է, որ կասկածելի, անհաստատ փաստերից Գ. Աբգարյանը հանում է հաստատ եզրակացություն», «Գ. Աբգարյանը հեռատեսորեն նահանջի ճանապարհ է թողնում իրեն համար» (86), «Եթե այսպես շարունակենք՝ կարող է նույնիսկ ստացվել, որ Դրասխանակերտցու Պատմության հեղինակը Խորենացին է» (87), «Գ. Աբգարյանի կառուցած շենքը ինքնին անհիմն, նորից փլվում է» (86)։ Եվ այսպես անընդհատ, Թորոսյանն, առանց Աբգարյանի ցանկությունը հարցնելու, նրա համար կառուցում է բարձրաբերձ շենքեր և ապա ինքն իր ձեռքով քանդում է իր կառուցած շենքերը և կարծում է, թե քանդվողները Աբգարյանի շենքերն են...

Շենքերի փլուզումներն ամենուրեք ուղեկցվում են մեկը մյուսին գերազանցող զարմանալի հայտնություններով։

Այսպես, օրինակ, Ուխտանեսը գրում է. «Ի տերութեանն տեառն Սմբատայ Վրկան՝ մարզպանի Հայոց մեծաց» («Մեծ Հայքի մարզպան տեր Սմբատ Վրկանի[98] իշխանության օրոք»)։ Իսկ Թորոսյանը հասկացել է այսպես՝ «Հայոց մեծերից տեր Սմբատի՝ Վրկանի մարզպանի տիրապետության (իշխանության) ժամանակ» (82)։ Այսպիսով, Հայաստան երկրի «Մեծ Հայք» աշխարհագրական անունը Թորոսյանի «վերծանությամբ» դարձել է Սմբատին բնորոշող բառ՝ «մեծ հայ»[99]...

«Մեծ Հայքից» հետո խոսքը տրվում է Հռիփսիմյան կույսերին։ Սրանց վերաբերյալ հանրամատչելի աղբյուրը Ագաթանգեղոսն է, ուստի հոդվածագիրը կարծել է, թե Ուխտանեսն իր տեղեկությունը քաղել է Ագաթանգեղոսից (84)։ Սակայն նրան հայտնի պետք է լիներ, որ Խորենացին «Հայոց պատմությունից» բացի, ունի նաև այլ գործեր, որոնցից մեկն էլ հենց հատկապես հռիփսիմյաններին նվիրված մի ճառ է, որից և օգտվել է Ուխտանեսը.

98 Սմբատ Բագրատունին Վրկանի մարզպան դառնալուց հետո կոչվում էր «Սմբատ Վրկան մարզպան» կամ պարզապես «Սմբատ Վրկան»։ Այս երկու ձևերն էլ շարունակեցին պահպանվել նաև այն բանից հետո, երբ Բագրատունին այլևս Վրկան աշխարհի մարզպան չէր։ Այսպիսով՝ «Վրկան» անունը դարձավ Սմբատի մականունը։ Մատենագիրները նույնպես Սմբատին կոչում են Սմբատ Վրկան (հմմտ. История императора Иракла, СПб, 1862, էջ 200։ Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 163, Լեո, Երկերի ժողովածու, հ. 2, Երևան, 1967, էջ 228, Աճառյան Հ., Հայոց անձնանունների բառարան, հ. Դ, Երևան 1948, էջ 540, 541 և այլն)։ Այնինչ՝ Թորոսյանը կարծել է, թե Վրկանը միայն աշխարհագրական անուն է և վկայակոչելով Ուխտանեսից բազմաթիվ էջեր՝ կամեցել է ցույց տալ, որ Ուխտանեսի գրքում «հակասություն կա» (82)։ Այս պատկերացումների հիման վրա նա նույնիսկ առաջարկել է «սրբագրել» Ուխտանեսի գիրքը և՝ «Սմբատ զորմէ ասացաք թէ մարզպան էր Հայոց»-ը դարձնել «Սմբատ, զորմէ ասացաք թէ մարզպան էր Վրկանայ»։ Սրբագրիչին հայտնի չի եղել, որ Ուխտանեսը իր տեղեկությունը քաղել է Ասողիկից, որը գրում է. «Հրամանաւ Սմբատայ Բագրատունւոյ, որ էր մարզպան Հայոց ի Խոսրովու հրամանէ» (Ասողիկ, 1885, էջ 85)։ Ի դեպ, Ուխտանեսն Ասողիկի առաջին հատորի 4-րդ գլխից է քաղել նաև պարսից թագավորների ցանկը։

99 Թյուրիմացությունը թերևս տեղի չունենար, եթե նկատվեր, որ գրախոսականի 82-րդ էջում հավաքված բոլոր օրինակներում Ուխտանեսը և մյուսները «Վրկան» անունը գործածել են առանց հոլովելու, «Հրամանաւ Սմբատայ Վրկան մարզպանի», «խորհուրդ տրարեալ Սմբատայ Վրկան մարզպանի», «զոր է Սմբատ Վրկան մարզպան», «զՏէրութիւն Սմբատայ Վրկան մարզպանի», «ի տէր մարզպան Վրկան իշխանութեանն»։ Այս բոլոր օրինակներում «Վրկան»-ը ընկալված է մոտավորապես «Վրկական» իմաստով. այսինքն՝ անվան «կան» վերջավորությունն ընկալվել է միաժամանակ որպես պատկանելիություն ցույց տվող վերջածանց (-ական)։

| Ագաթանգեղոս | Խորենացի | Ուխտանես |
| --- | --- | --- |
| գեօթանասուն մարդ[100]: | գեօթանասուն հոգի զորոցն ասէ պատմագիրն[101]: | գեօթանասուն հոգի ասէ պատմագիրն[102]. |

*Գրախոսության վերջին գլխի վերնագիրն ունի հրամայող հայտարարության տեսք. «Այսօր Սեբեոսի անունով հայտնի Պատմությունը իրական Սեբեոսի* Պատմութիւն ի Հերակլն *գործն է»: Տեսնենք, ինչպես է հիմնավորվել նաև այս հայտարարությունը:*

*«Գ. Աբգարյանի անհաջող փորձի հերքումով,—գրում է «Հերքողը»—թեև ինքնին արդեն, անխախտ են մնում մեր ունեցած պատկերացումները... այնուամենայնիվ ավելորդ չենք համարում վկայակոչել մի քանի փաստ, որոնք հաստատում են Սեբեոսի հեղինակային իրավունքները» (87): Ավելորդ չհամարված փաստերից առաջինը զետեղված է 87-րդ էջում գտնվող հետևյալ ենթավերնագրի տակ. «Սեբեոսի Պատմությունը* և ի Հերակլա պատմութեանց բնագիրը»: *Սույն բնագիրը պահպանվել է մեր Մատենադարանի № 993 ձեռագրում: Թորոսյանը սրա մասին տեղեկություն է քաղել Ն. Մառից և գրել. «№ 993 ձեռագրում եղած հատվածը ոչ թե Է դարի, այլ՝ Թ-Ժ կամ ավելի ուշ ժամանակների գործ է» (89): Նրան այնպես է թվացել, թե՝ եթե «№ 993 ձեռագրում եղած հատվածը ոչ թե Է դարի, այլ Թ-Ժ կամ ավելի ուշ ժամանակների գործ է», դրանով հաստատվում է, թե Սեբեոսին վերագրվող երկի հեղինակը Սեբեոսն է...*

*Քննարկվող հատվածի մասին դատողություններ անելիս գրախոսը «գտել է» մատենագիրների կուսակցական պատկանելիությունը որոշելու մի շատ հետաքրքիր միջոց՝ «Թորգոմյան» անունը[103]: Նա կարծել է, թե № 993 բնագրի հայ հեղինակը անօրեն ազգ է համարում հայերին (Թորգոմյաններին) և սրանից էլ եզրակացրել է. «Ակնհայտ է, որ մեր հեղինակը քաղկեդոնական է»: (89) Իրականում, սակայն, պետք էր իմանալ, որ վրացական աղբյուրների ակնհայտ ազդեցությունը կրող այս աղբյուրում «Թորգոմյան» արտահայտությունը կարող էր գործածված լինել հենց քաղկեդոնական վրացիների նկատմամբ: Մասնագետներին հայտնի է, որ «Վրաց պատմության» («Քարթլիս Ցխովրեբա») մեջ Թորգոմը համարվում է հենց նախահայրը նաև քաղկեդոնական վրացիների:*

*Թյուրիմացության պատճառը միաժամանակ գրաբար բնագրի սխալ վերծանումն է. «Թագաւորն խոսրով ժողովեալ զբազմութիւն ազգաց անօրինաց... և զԹորգոմեանս...»: Ինչպես տեսնում ենք, «ազգաց անօրինաց» արտահայտությունը Թորգոմյաններին չի վերաբերում և նրանցից անջատված է «և» շաղկապով: Ուրեմն՝ քննարկվող նախադասությունը առհասարակ ոչ մի կապ չունի քաղկեդոնականության հետ:*

---

100 Ագաթանգեղոս, *1909, էջ 107:*

101 Մովսես Խորենացի, *Մատենագրութիւն, Վենետիկ, 1865, էջ 300:*

102 Ուխտանես, *հ. Ա, էջ 92:*

103 *Մեկ ուրիշ դեպքում Թորոսյանը փորձում է «թարգմանիչ» բառով որոշել մատենագիրների ապրած ժամանակը: Ապացուցելու համար, որ Խորենացին ապրել է 5-րդ դարում՝ նա գրում է. «թարգմանիչ մակդիրն էլ իր հերթին մատնացույց է անում նրանց ապրած ժամանակը» (73): Հայտնի է, սակայն, որ «թարգմանիչ» մակդիրը կրել են նաև հետագա դարերի մատենագիրները և՝ որ 7—8-րդ դարերում ապրել է հենց այդ մակդիրը կրող մեկ ուրիշ Խոսրով թարգմանիչ:*

Գրաբարը հոդվածագրի գործը դժվարացրել է նաև «պատմութիւնք» բառը վկայակոչելիս: Սույն բառը «գիրք», «վարք» և այլ բառերի նման, հոգնակի վերջավորություն ունենալով հանդերձ՝ գրաբարում ունի նաև եզակի իմաստ և կարող է վերաբերել ընդամենը մեկ Պատմության[104]: Այնինչ՝ Թոփչյանը կարծել է, թե «Հերակլայ պատմութեանց» խորագրի մեջ «պատմութեանց» բառը ցույց է տալիս, որ այդ հատվածը քաղված է «Հերակլի պատմություն» կոչված ոչ թե մեկ, այլ մի շարք երկերից: Այս պատկերացումը փաստարկելու համար, նա, դարձյալ Մաքի մասնակի օգնությամբ, վկայակոչում է վրացական երեք աղբյուր (Սումբատ, Վրաց դարձի պատմություն, Ջուանշեր), չնկատելով, որ իր նշած աղբյուրներից ոչ մեկը «Հերակլի պատմություն» չէ[105] և ոչ մի կապ չունի քննարկվող հատվածի հետ:

Հայ և վրաց աղբյուրների մասին հոդվածագրի ունեցած պատկերացումները հանգեցրել են նաև այսպիսի մի մտքի: «Ըստ հայ մատենագիրների, Խոսրով Ապրուեզին սպանել են նրա պալատականները իր որդու հրամանով: Ըստ վրաց մատենագիրների (որոշ բացառություններով), Խոսրովին սպանել են Հերակլը կամ նրա զինվորները» (90): Այս հայտարարության հեղինակին պարզապես հայտնի չի եղել, որ իր վկայակոչած վրացական աղբյուրների դիմաց կարելի է վկայակոչել եռապատիկ ավելի հայկական աղբյուրներ (Կայսերաց պատմություն, Միծառնեայ խաչ, կարծեցյալ Շապուհ Բագրատունի-Հացունեաց խաչ, Պատմութիւն նշխարաց Ս. Ներսէսի, Ս. Անեցի, Կ. Գանձակեցի և այլն), որոնց մեջ նույնպես Խոսրովին սպանել են Հերակլը կամ նրա զինվորները:

Վրաց մատենագիրներին վկայակոչելիս, ինչպես տեսանք, Թոփչյանը փակագծերի մեջ ավելացրել է «որոշ բացառություններով» արտահայտությունը: Իսկ հայկական աղբյուրների դեպքում նա այդ բացառությունը չի արել, որովհետև եթե աներ՝ կբացահայտեր իր թաքցրած մի փաստը, որը նա համենայն դեպս հարկադրված է եղել բացահայտելու երկու էջ հետո: Նկատի ունենք հետևյալը: 90-րդ էջում նա հայտարարում է, որ բոլոր հայկական աղբյուրները (առանց բացառության) չեն հայտնում, թե Խոսրովին սպանել է Հերակլը: Իսկ 92-րդ էջում նա բացահայտորեն ներկայացնում է երեք այդպիսի հայկական աղբյուր. «Ըստ Սամվել Անեցու... Կիրակոս Գանձակեցու... Միծառնեայ խաչի՝ Խոսրովին սպանել է Հերակլը»:

Այս փաստը 90-րդ էջում թաքցված էր, որովհետև՝ եթե այդ էջում հայտնվեր, որ հայ մատենագրության մեջ գոյություն ունի սպանության վերաբերյալ հիշյալ տեղեկությունը՝ հոդվածագիրը կզրկվեր «բանավիճելու» հնարավորությունից և կընդուներ մեր տեսակետը: Բայց այդ տեսակետը իր կարծիքով «հերքելուց» հետո նա 92-րդ էջում արդեն լույս աշխարհ է հանում թաքցված փաստը: Իսկ ինչո՞ւ է լույս աշխարհ հանում: Նրա կարծիքով մենք № 993 բնագրի ստեղծման ժամանակ ենք համարել 7-րդ դարը: Ահա, այդ փաստը պետք է

104 Հմմտ. «Որպէս ցուցանէ քեզ պատմութիւնք սորոց Վարդանանց, զորս գրեաց երանելի քահանայն Եղիշէ» (Արծրունի, Պատմութիւն Տանն Արծրունեաց, 1887, էջ 27):

105 «Հերակլի պատմություն» ասելով հոդվածագիրը նկատի ունի ոչ թե տարբեր աղբյուրներում Հերակլի մասին հայտնվող տեղեկությունները, այլ՝ հատկապես Հերակլին նվիրված պատմությունները: Հմմտ. էջ 93 «Հեղինակն հայտնում է, որ ինքն օգտվել է Հերակլին նվիրված Պատմություններից»: Իրականում այս հեղինակն օգտվել է հենց այն միևնույն աղբյուրից, որից օգտվել են նաև № 7729 ձեռագրի հեղինակը, որն իր հատվածի վերնագրի մեջ նկատի ունի ընդամենը մի Հերակլի պատմություն. «ի Պատմութենէ Հերակղի»:

եկել, որպեսզի «հերքի» նաև մեր այս երկրորդ կարծեցյալ դրույթը[106]։ Եվ նա այս անգամ արդեն վկայակոչել է փաստը՝ Գանձակեցուն, որպեսզի նրա միջոցով ինքն անվլայն կես հազարամյակով հետանա անցանկալի 7-րդ դարից և կարողանա գրել՝ «եթե մեր բնագրի հեղինակը օգտվել է նշված պատմիչներից (նկատի ունի Գանձակեցուն և մյուսներին—Գ. Ա.), ապա այն պետք է հորինված լինի դարձյալ ԺԲ դարում կամ հետո» (92)։ Բայց միթե՞ նրան այս անգամ էլ հայտնի չի եղել, որ Գանձակեցին 13-րդ դարի պատմիչ է, և որ «ԺԲ դարում կամ հետո» հորինված բնագրի հեղինակը չէր կարող օգտված լինել իրենից մեկ դար հետո գրված գրքերից...[107]։

Որքան էլ տարօրինակ լինի, երբեմն թվում է, թե Թորոսյանն ինքը գիտմամբ իր ձեռքով հավաքել և գրախոսականի մեջ դետեղել է իր ասածը հերքող փաստերը, որպեսզի այդ փաստերը չնկատեն և իր դեմ չուղղեն ուրիշները։ Այսպես. նա 90—91 էջերում բերել է հիշյալ վրաց աղբյուրներից չորս հատվածներ, որպեսզի ապացուցի, որ № 993 բնագրի «հեղինակը տվյալ դեպքում հետևում է վրաց պատմագրությանը» (91)։ Իրականում, սակայն, նրա բերած բոլոր հատվածները միաձայն ապացուցում են հակառակը, այսինքն՝ որ № 993 բնագրի հեղինակը բոլորովին ծանոթ չի եղել հիշյալ վրաց աղբյուրներին։

Ծանոթանանք քննարկվող չորս հատվածներին։ Առաջին և երկրորդ հատվածներում («Սումբատ» և «Վրաց դարձի պատմություն») հայտնվում է այն մասին, որ բյուզանդական կայսր Հերակլը գերի է վերցնում պարսից արքա Խոսրովին։ Իսկ հայկական աղբյուրի (№ 993 բնագրի) հեղինակը հայտնում է Խոսրովի գլխատման լուրը, որը չկա վրացական երկու հատվածներից և ոչ մեկում։

Հատվածներից երրորդում («Ջուանշեր») հայտնվում է, որ «Հերակլ թագավորը մտավ Պարսկաստան և սպանեց Խոսրո թագավորին» (91)։ Սրա փոխարեն՝ հայերեն բնագրի հեղինակը հայտնում է, որ Խոսրովին սպանել են Հերակլի զինվորները, որոնք Խոսրովի կտրած գլուխը մատուցել են կայսրին։ Այս տեղեկությունները նույնպես չկան վրացական աղբյուրում։

Չորրորդ հատվածը վերաբերում է պարսից զորավար Խոռյամին։ Վրացական աղբյուրի հեղինակն ակնհայտորեն օգտվել է հունական աղբյուրներից և պարսից զորավարին կոչում է Սառվառն («Սարբարազ»-ի աղավաղությունը)։ Իսկ հայերեն բնագրի հեղինակին հայտնի է եղել զորավարի միայն այն անունը, որը հանդիպում ենք հայկական նաև այլ աղբյուրներում՝ Խոռիան:

Այսպիսով՝ գրախոսականի մեջ տեղ գտած վրացական աղբյուրներից և ոչ մեկը չպետք է վկայակոչվեր և տեղ զբաղեցներ գրախոսականում, որովհետև

---

106 7-րդ դարը մենք մատնանշել ենք ոչ թե որպես № 993 բնագրի, այլ՝ նրա աղբյուրի («Հերակլի պատմության») ժամանակ։ Այնպես, որ հոդվածագիրը, եթե իր գրախոսած գիրքը ճիշտ հասկանար, կպատռվեր № 993 բնագրի ժամանակը կես հազարամյակով հետաձգելու ջանքերից։ («Հերակլի պատմության» ժամանակը մենք նշել ենք սոսկ պայմանականորեն, մտածելով, որ այդ Պատմության հեղինակը եղել է Բագրատունյաց եպիսկոպոս Սեբեոսը)։ «Հերակլի պատմությունից» քաղված հիշյալ երկու հատվածների տարբերությունները ցույց են տալիս, որ դրանք ոչ թե արտագրություններ են, այլ՝ ազատ վերապատումներ (հավելումներով և կրճատումներով)։

107 Հենց Գանձակեցու ծննդյան թվականին (1200—1202) ընդօրինակված մի ձեռագրում արդեն գտնում ենք «ԺԲ դարում» հորինված բնագրի մի տարբերակը։ Եվ քանի որ նշված ձեռագիրն (№ 7729) իր հերթին ընդօրինակված է մի շատ ավելի հին ձեռագրից, ուստի նրա մեջ գտնվող բնագիրը պետք է ստեղծված լիներ բնականաբար «ԺԲ դարից» շատ ու շատ առաջ։

դրանք կապ չունեն հայերեն բնագրի հետ։ Այս բնագիրը Մառի վկայությամբ՝ կրում է վրացական միջավայրի ազդեցություն, բայց Մառի ասածը բոլորովին չի առնչվում գրախոսողի վկայակոչած աղբյուրների հետ։

Վրացական աղբյուրների վկայությունը հավանաբար քիչ է թվացել հոդվածագրին, դրա համար էլ նա հենց միևնույն էջում միանգամից խոսք է բացել առհասարակ համաշխարհային պատմագրության մասին։ «Համաշխարհային պատմագրության մեջ այս նամակը (խոսքը Խոսրովի և Հերակլի նամակագրության մասին է—Գ. Ա.) հայտնի է միայն ու միայն այն Պատմությունից, որ համարվում է Սեբեոսինը...»։ Եվ նա համեմատում է (էջ 92) ներկա «Սեբեոսից» և № 993 ձեռագրից քաղված երկու բոլորովին տարբեր նամակներ՝ ապացուցելու համար, թե դրանք... միևնույն նամակներն են և թե՝ № 993 ձեռագրի հեղինակն այդ նամակը քաղել է ներկա «Սեբեոսից»։

Իրականում նամակների մեջ չկա բացառապես ոչ մի նմանություն։ Ստորև բերված համեմատությունը պարզ ցույց է տալիս, որ № 993 ձեռագրի հեղինակը ներկա «Սեբեոսից» չի քաղել նամակը։ Եվ դա ավելի ցայտուն է երևում ներկա «Սեբեոսից» ինչպես օգտված Արծրունու քաղվածքի համադրությամբ։

| «Սեբեոս» | Արծրունի | № 993 ձեռագիր |
|---|---|---|
| Աստուածոց պատուական | Աստուծոց պատուական | Ես Խոսրով նստեալ |
| և ամենայն երկրի տէր | և ամենայն թագաւորաց, | ի վերայ ամպոց և ընդ |
| և թագաւոր և ծնունդ | տէր երկրի և ծովու, | աստուածս փառաւո- |
| մեծի Արամազդայ Խոս- | ծնունդ մեծին Արամազ- | րեալ՝ որ հրամայեալ |
| րով՝ առ Երակլէս | դայ, Խոսրով թագաւոր՝ | եմ քեզ Հերակլի զալ... |
| անմիտ և անպիտան | առ Հայրակլոս անմիտ | |
| ծառայդ մեր... | և անպիտան ծառայ մեր... | |
| Արի, առ զկին քո | Արի, առ զկին քո | |
| և զորդիս և եկ այսր... | և զորդիս և եկ այսր...[108] | |

Մեկնաբանությունն ավելորդ է։

Նամակների համեմատությանը անմիջապես հաջորդում է մի ենթավերնագիր՝ «№№ 2220 և 2271 ձեռագրերի մատենագիտական ցանկերը» (93)։ Այս ցանկին մենք մեր աշխատության մեջ չափից ավելի մեծ կարևորություն ենք տվել և Թորոսյանը իրավացի կլիներ, եթե նշեր այդ փաստը։ Բայց նա այս անգամ մեր նկատմամբ ունեցած զարմանալի լավատեսությամբ տրամադրված, ընդհակառակը, ընդունում է մեր ասածը և հաստատում է ցուցակի մեծ կարևորությունը։ «Այս հիրավի արժեքավոր ու վստահելի ցանկում,—գրում է նա,— կարդում ենք ...Հերակլ, յեւսեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ, որ ինչ սակս պատերազմացն Հերակլի և Խոսրովու, և այլ բանք պիտանիք» (93)։ Պարզվում է, որ հոդվածագրի անսպասելի և մինուճար լավատեսությունը ծագել է այն նպատակով, որ նրա միջոցով ցույց տրվի, թե մեր բարձր գնահատած «ցանկի հեղինակը պարզ կերպով հայտնում է, որ այս գործը, որի մեջ պատմվում է Հերակլի ու Խոսրովի պատերազմների մասին, գրել է Սեբեոսը, այլ կերպ՝ անկասկածելիորեն հաստատում է, որ ցարդ Սեբեոսի անունով հայտնի Պատմությունը, իրոք, Սեբեոսի գործն է» (93)։

108 Թովմա Արծրունի, Թիֆլիս, 1917, էջ 157—158։

Հակառակ այս հայտարարության, ցանկի հեղինակը ոչ մի «անկասկածելի» բան չի հաստատել։ Նա պարզապես նշել է «Հերակլի պատմության» բովանդակությունը։ Եվ պետք էր իմանալ, որ եթե աշխարհում գոյություն ունենային «Հերակլի պատմություն» կոչված հարյուրավոր գրքեր՝ նրանց բոլորի վրա կարելի կլիներ տարածել ցանկի տվյալը, որովհետև Հերակլի պատմությունն անհնարին է պատկերացնել առանց երկու ժամանակակից թագավորների՝ Հերակլի և Խոսրովի կռիվների։

Քննարկվող մատենագիտական ցանկի մասին հոդվածագիրը 73-րդ էջում գրում է. «Այս ցանկերի կամ ցանկի հեղինակը խիստ ստուգապատում անձ է։ Բավական է հիշեցնել, որ Մաղաքիայի Պատմության իսկական հեղինակը պարզվեց նաև այս ցանկով... Տե՛ս Հ. Ժամկոչյան, Պատմութիւն վասն ազգին նետողաց երկի հեղինակը. Երևանի պետական համալսարանի գիտական աշխատություններ, հատ. XXIII, Երևան, 1946, էջ 367—388, հատկապես էջ 382 ծանոթագրություն 4»։ Բաց ենք անում մեր ընդգծած «հատկապես էջ 382, ծանոթագրություն 4-ը» և կարդում ենք հետևյալ բացատրությունը. «Հոդվածը շարվելուց հետո (ուշադրություն ենք հրավիրում՝ «շարվելուց հետո» արտահայտության վրա—Գ. Ա.) մեզ հայտնի դարձավ, որ... Պատմագիրք հայոց կոչվող ցուցակներում նույնպես Պատմութիւն վասն ազգին նետողաց երկի որպես հեղինակ ցույց է տրված Գրիգորը»։ Ինչպես տեսնում ենք, 1724 թ. ցանկը Հ. Ժամկոչյանին հայտնի է դարձել միայն այն բանից հետո, երբ նրա հոդվածն արդեն շարված է եղել։ Այսպիսով Ժամկոչյանը Մաղաքիայի Պատմության իսկական հեղինակին պարզել է առանց 1724 թ. ցանկի միջամտության։ Իսկ Թորոսյանը հարգարժան պատմաբանի վաստակի կեսն էլ հատկացրել է 1724 թ. ցանկին...

Միթե՞ բանասիրական գրականության մեջ 1724 թ. ցանկի արժեքը ցույց տվող որևէ այլ աղբյուր գոյություն չունի, որ Թորոսյանը նույնիսկ հարկադրված է եղել դիմելու սխալ հասցեի։ Ամենևին էլ ոչ։ Մենք հատուկ հոդված ունենք նվիրված այս ցանկին. Եթե Թորոսյանը դրան անծանոթ չէր՝ նրա մասին կարող էր իմանալ Հ. Անասյանի «Հայկական մատենագիտությունից» (հ. Ա, Առաջաբան, էջ 23)։

Հենց Մաղաքիայի Պատմության իրական հեղինակը պարզելու նպատակով մենք հատկապես ուսումնասիրել ենք Մատենադարանի №№ 2271 և 2220 ձեռագրերում պահպանված «Պատմագիրք հայոց»-ը և այդ մասին զեկուցում կարդացել Երևանի Համալսարանում, դեռևս Հ. Ժամկոչյանի շատ արժեքավոր ու բոլորովին անկախ հոդվածի հրապարակումից առաջ (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 72)...

«Գրախոսականից» մնում է վերլուծելու Ասողիկին, Սամվել Անեցուն և Մխիթար Անեցուն վերաբերող ընդամենը մեկական փաստարկ, որոնք զետեղված են գրախոսականի ամենավերջին ենթավերնագրի տակ՝ «Սեբեոսը և Ասողիկն ու Մխիթար Անեցին» (93)։ Թվում է, այստեղ պետք է վերջապես կատարվեր խոստումը և ընթերցողին ներկայացվեին Ասողիկից, Սամվել Անեցուց և Մխիթար Անեցուց որոշակի վկայություններ, «որոնք հաստատում են Սեբեոսի հեղինակային իրավունքները»։ Սակայն հույսերը չեն արդարացվում նաև այս վերջին անգամ։

Գրախոսության հեղինակը Ասողիկի առաջաբանը թերթելով՝ կարդացել է նրա օգտագործած աղբյուրների ցանկը և՝ գրել «Ինչպես տեսնում ենք, Ասողի-

կը Խոսրով անունը չի նշում, այլ կերպ՝ եթե Խոսրովը, նույնիսկ, եղել է և Պատմությունը գրել, Ասողիկը նրանից չի օգտվել» (95)։ Բավական է, սակայն, որ նա թերթեր առաջաբանում զետեղված ցանկին հաջորդող թերթերը՝ կնկատեր, որ այս գրքում օգտագործված են նաև այնպիսի կարևոր աղբյուրներ, որոնց հեղինակները ցանկում չեն նշված։ Ուրեմն Խոսրով անվան՝ ցանկում նշված չլինելը դեռևս չի նշանակում, թե Ասողիկը չէր կարող օգտագործած լինել Խոսրով անունով մի հեղինակի գործ։

Այս կապակցությամբ չի կարելի չվերհիշել Հ. Պ. Անանյանի հոդվածը, որը լավագույն օրինակ է այն բանի, թե ինչպես՝ միևնույն փաստերը կարող են բոլորովին տարբեր կերպով ընկալվել տարբեր պատրաստություն ունեցող մարդկանց կողմից։ Թորոսյանն Ասողիկի առաջաբանում գտնվող ցուցակը բերել է, ինչպես տեսանք, ցույց տալու համար, որ նրանում նշված են Ասողիկի օգտագործած բոլոր աղբյուրները (հետևաբար՝ «եթե Խոսրովը նույնիսկ եղել է ու Պատմություն գրել, Ասողիկը նրանից չի օգտվել»)։ Իսկ Հ. Պ. Անանյանը, ընդհակառակը, մանրազնին քննությամբ պարզել է, որ առաջաբանի ցանկում չեն նշված մի շարք աղբյուրներ, որոնք ձեռագրերում «անանուն ըլլալով՝ ասոնց մասին յառաջաբանին մեջ յիշատակութիւն մը չենք գտներ»[109]։ Այս ճշմարտությունը հիմք ընդունելով՝ հարգո բանասերն ընտրել է Սեբեոսին վերագրվող երկի հեղինակը որոնելու շատ տրամաբանական ուղիներ։ Իսկ Թորոսյանը հույսը դրել է առաջաբանի պակասավոր ցուցակի վրա՝ չիմանալով նրա պակասավոր լինելու մասին։

«Բայց ինչպե՞ս իմանանք, թե Ասողիկի Պատմության ո՞ր հատվածներն են քաղված իրական Սեբեոսի իսկական Պատմությունից։ Գ. Աբգարյանի համար այս հարցը անլուծելի է մնացել... Մեր պարտքն ենք համարում ցույց տալ այն եղանակը (հոդվածագիրն իր պարտքն է համարում՝ մասնագետներին ցույց տալ այն եղանակը—Գ. Ա.), որով հնարավոր կլինի պարզել այդ հարցը։ Տվյալ դեպքում պետք էր ղեկավարվել հայտնիի բացառման սկզբունքով։ Այսպես, Ասողիկի պատմությունը բառ առ բառ համեմատում ենք նրա աղբյուրների հետ և հանում ենք այն ամենը, ինչ նա վերցրել է... իր կողմից թվարկված հայ հեղինակներից, որոնց գործերը մեզ հայտնի են... Այդ բոլորից հետո Ասողիկի Պատմությունից կմնան ինչ որ հատվածներ։ Հատվածների այս ամբողջությունը անվանենք զանգված ՍԲ» (95)։

Եվ այսպես. «հայտնիի բացառման սկզբունքը» կիրառելուց և Ասողիկի գիրքը խոսքով (և ոչ՝ գործով) զտելուց հետո՝ Թորոսյանի կարծիքով գրքում կմնա միայն «զանգված ՍԲ»։ Ահա, այս թյուրիմացական զանգվածն է հենց այն վերջին հույսը, որով հոդվածագիրը համոզված է եղել, որ «Գ. Աբգարյանի անհաջող փորձի հերքումով» հաստատվելու են «Սեբեոսի հեղինակային իրավունքները» (87)։

Ավելի մոտիկից ծանոթանանք այս տեսարժան «զանգված ՍԲ»-ին։ Պարզվում է, որ «զանգված Ս»՝ նշանակում է «զանգված Սեբեոս», իսկ «զանգված Բ»,—«զանգված Բագրատունի»։ Երկուսը միասին «զանգված ՍԲ»...

Հոդվածագիրն Ասողիկի «զանգվածը» համեմատել է Սեբեոսին վերագրվող երկի «զանգվածի» հետ և «զարմանքով բայց և ուրախությամբ» արձանագրել է, որ դրանք բառ առ բառ համընկնում են։ «Այս բոլորից հետո,—գրում է նա,—դժվար չէ, իհարկե, եզրակացնել, որ նորահայտ բնագիրը Սե-

109 Հ. Պ. Անանյան, «Բազմավէպ», 1970, 1—3, էջ 9։

բեոսի Պատմությունն է։ Ասվածը հաստատելու համար դիմենք համեմատությունների» (96)։ Սրանից հետո գրախոսը դիմում է համեմատություններին և 96—98-րդ էջերում ներկա «Սեբեոսի» հետ համեմատելով ոչ միայն Ասողիկի, այլև Դրասխանակերտցու և Արծրունու գործերը, արձանագրում է, որ դրանք բառ առ բառ համընկնում են։

Թորոսյանի միայն այսօր նկատած այս «զարմանալի և ուրախալի» փաստը բանասիրությանը հայտնի է արդեն շուրջ հարյուր տարի։ Ք. Պատկանյանը 1879 թ. Սեբեոսին վերագրվող երկին կից արդեն հրատարակել է Ասողիկից քաղված բոլոր այն հատվածները, որոնք այսօր գրախոսը ներկայացրել է, որպես «զանգված Ա»։ Բայց այս «զանգվածը» սոսկ ցույց է տալիս, որ Ասողիկն օգտվել է ներկա «Սեբեոսից» և ուրիշ ոչինչ։ Իսկ սա շուրջ հազար տարվա մի ճշմարտություն է, որի մասին ժամանակին հայտարարել ենք նախ և առաջ ինքներս, գրելով, որ Ասողիկը «լայնորեն օգտվել է» Սեբեոսին վերագրվող երկից[110]։ Ապացուցելին, ուրեմն, սա չէր, այլ՝ Սեբեոսի հեղինակային իրավունքները։

Այսպիսով՝ ընթերցողի սպասումները մինչև վերջ մնում են չիրագործված և հոդվածագիրը կամովին ստանձնած իր պարտականությունը չի կատարում։ Նրա հնարած «զանգված ԱԲ»-ն և «հայտնի քաղման սկզբունքը» օգուտ չեն բերում, որովհետև Ասողիկի գիրքն ըստ այդ սկզբունքի զտելուց հետո գրքում մնում են ոչ թե Թորոսյանի կարծած «զանգված ԱԲ»-ն, այլ՝ բազմաթիվ այլ «զանգվածներ», որոնց հիման վրա պետք էր քննել և «հաստատել» Սեբեոսի հեղինակային իրավունքը...

Հարցի գիտական քննությունը միաժամանակ պահանջում էր՝ Ասողիկի քաղվածքները կոչել ոչ թե «զանգված Սեբեոս», այլ՝ այնպես, ինչպես ձեռագիրն է թելադրում, այսինքն՝ «Անհեղինակ քաղվածքներ»։ Այս դեպքում ո՛չ մի հնարքով հնարավոր չէր լինի՝ անվերնագիր երկը կապել Սեբեոսի անվան հետ, որովհետև այդ անունը չկա ո՛չ քննարկվող երկը պարունակող բուն ձեռագրերի մեջ, ո՛չ էլ՝ այդ երկից քաղված այն հատվածների վրա, որոնք գտնվում են Ասողիկի գրքում։

Թորոսյանն այս երկու մասյանների վրա ինքն իր ձեռքով մտովին ավելացրել է Սեբեոսի անունը և ցանկացած անունով մկրտած միավորները միմյանց հետ համեմատելով ստացել է «իրական Սեբեոսի իսկական Պատմության հատվածներ»։ Նա հենց այդպես էլ կոչում է այն հատվածները, որոնք Ասողիկի գրքում ոչ մի հեղինակի անունը չունեն։ «Քանի որ,—գրում է նա,—Ասողիկի գործում եղած իրական Սեբեոսի իսկական հատվածները նույնանում են այսօր էլ Սեբեոսի անունով հայտնի Պատմության հետ՝ նշանակում է Ասողիկի հիշատակած Պատմութիւն Հերակլի որ ասացեալ է Սեբեոսէ եպիսկոպոսէ և ակադ. Ստ. Մալխասյանցի հրատարակած Սեբեոսի եպիսկոպոսի Պատմությունը նույն գործերն են» (99)։ Ահա՛, սա է «հարցի լուծման» Թորոսյանի եղանակը...

«Զանգվածներից» ստացված «արդյունքից» գոհ՝ Թորոսյանը շարունակում է. «Նույն արդյունքն ենք ստանում նաև Մխիթար Անեցու և Սեբեոսի Պատմությունները զուգադրելով» (99), իսկ սրանից առաջ նա գրել էր. «Գ. Աբգարյանը ճիշտ չէ։ Միջնադարյան մի քանի մատենագրական հուշարձաններում

---

110 Աբգարյան, էջ 20։

*պահպանվել են մի շարք արժեքավոր տվյալներ, որոնցից շատ պարզ երևում է, որ այժմ Սեբեոսին վերագրվող երկը միջնադարում նույնպես գիտվել է որպես Սեբեոսի գործ։ Սեբեոսից օգտվող հեղինակներից Սեբեոսի անունը նշում են ոչ միայն Ասողիկը, այլև Սամվել Անեցին ու Մխիթար Անեցին» (82)։*

*Սրանք դարձյալ ու դարձյալ վերացական հայտարարություններ են։* Իրականում ո՛չ Սամվել Անեցին, ո՛չ էլ Մխիթար Անեցին չեն օգտվել ներկա «Սեբեոսից»։ *Թորոսյանն ինքն էլ ոչ մի զուգադրություն չի կատարել։ Ուստի ընթերցողին մնում է՝ միայն զարմանալ, թե գրախոսողն ինչպես է համարձակվել առանց զուգադրելու և իմանալու, թե իր վկայակոչած պատմիչները «Սեբեոսի Պատմությունից» օգտվել են, թե ոչ, ստեղծել այն տպավորությունը, թե ինքն անձամբ քննել է այդ պատմիչների երկերը և հենց այդ քննությունը նկատի ունի, երբ գրում է. «Այսպիսով՝* քննությունը *ցույց տվեց, որ Գ. Աբգարյանի հարցադրումը՝ Սեբեոս թե Խոսրով, ճիշտ չէ և այդ հարցին նրա տված պատասխանն էլ բնականաբար մերժելի... Հետևապես Գ. Աբգարյանի հարցադրմանը կարող է տրվել միայն մի պատասխան՝ Սեբեոս» (99)։*

*Բեկման չենթարկվող դատավճռի ոճով շարադրված այս՝* «միայն մի պատասխանով» *էլ ավարտվում է Խոսրով Թորոսյանի «գրախոսականը», որը վերաբերում է, ինչպես ասվեց, մեր աշխատության մեջ ընդամենը 14 էջ զբաղեցնող մի հատվածի։ Մենք էջ առ էջ քննեցինք ամբողջ գրախոսականը, չարհամարհելով գրախոսողի նույնիսկ այնպիսի փաստարկներ, որոնց կարելի էր նաև չանդրադառնալ։ Տեսանք, որ* «միայն մի պատասխանը» *արդյունք է* միայն *սխալ ընկալումների և անտեղյակության։*

Г. В. АБГАРЯН

## ЕЩЕ РАЗ О СЕБЕОСЕ

**Резюме**

На основании списка рукописей, составленного ученым XVII века Варданом Багишеци, автор данной статьи высказал в 1958 году предположение о том, что исторический труд, приписываемый Себеосу, принадлежит перу Хосрова. П. Ананян в своем ценном исследовании ставит под вопрос указанное предположение и приходит к правильному выводу о том, что имя Хосрова, встречающееся в списке Вардана Багишеци, является именем не автора интересующей нас «Истории», а главного ее героя. Ученый приводит одновременно ряд фактов с целью восстановления авторства Себеоса. Однако эти факты не дают достаточного основания для окончательного решения проблемы. Имя действительного автора исторического труда, написанного в VII веке и приписываемого ныне Себеосу, не сохранилось в древних рукописях.

По поводу обсуждаемого вопроса выступал также Х. Торосян, статья которого является результатом ошибочных восприятий.

G. V. ABGARIAN

# ENCORE UNE FOIS SUR SEBEOS

## Résumé

Sur la base des listes de manuscrits composées par Vardan Baghichetsi (XVII siècle) l'auteur de cet article a exprimé en 1958 une hypothèse d'arés laguelle l'oeuvre historique attribuée à Sébéos appartient à la plume de Khosrov. P. P. Ananian dans sa très appréciable recherche met en doute l'hypothèse mentionnée et arrive à la conclusion très exacte que le nom Khosrov, trouvé dans la liste de Vardan Baghichetsi, est non pas le nom de l'auteur de l'Histoire qui nous interesse, mais le nom du héros principal de cette Histoire. Le savant cite en même temps quelques faits pour rétablir l'autorité de Sébéos. Pourtant il ne sont pas suffisants pour résoudre le problème. Le nom de l'auteur réel de l'oeuvre historique écrite au VII siècle et attribuée actuellement à Sébéos n'es pas conservé dans les anciens manuscrits.

Kh. Thorossian s'est également exprimé à l'occasion de la question discutée, mais son article est le résultat de son interprétation inexacte.